# ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏԻ

## ԱՂՕԹՔ

# ԱՂՕԹԱՄԱՏՈՅՑ

## Յ Ո Վ Հ Ա Ն Ն Ո Ւ

## ՍԱՐԿԱՒԱԳԱՑ ՎԱՐԴԱՊԵՏԻ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի Տպարանի Մխիթարեանց

ՌՅԳ — 1854

# Ա.

## ԱՌ ԱՍՏՈՒԱԾ ՀԱՅՐ

ԱՐԱՐԻՉ իմանալեաց և զգալեաց բնութեանց, Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով և՛ի ձեռն որոյ զամենայն գոյացուցեալ յոչէից հաստատեցեր գեղեցկապէս. վասն զի կամաց և հրամանի ստեղծողիդ ինչ ոչ ընդդիմանայ. և նմանապէս հնարաւոր է քեզ անհասանելի մտաց մերոց գործ բարւոք և մեծ. որպէս վկայ են 'ի ձեռն աչաց արարածք ամենայն նիւթականք և երևելիք. որոց վախճան և կատարած զմարդն հաճեցար ստեղծանել, տուեալ նմա պատիւ բազմադունակ և զարմանալի. որոց առաջին և մեծ՝ լինել և անուանել պատկեր անճառելոյ բնութեանդ: Եւ արդ զնախաստեղծս քան զնա զգալի բնութիւնս 'ի հարկի ծառայժէ.

ութեան կացուցանելով նմա, հաւատալով ՚ի փրկութեան նմա գըրգանս զդրախտին գեղեցկութիւն․ յորում զազատութիւն և զինքնիշխանութիւն անձին նորա յայտնապէս ցուցանել կամելով, աւանդեցեր փոքր ինչ նմա զպատուիրան իւր առհաւատչեայ մեծամեծաց ՚ի բարերար կամս քո հանդերձելոց այնմ նմա յաղթանակաց՝ յետ հանդիսին առաքինութեան ։ Իսկ նորա նախապատուեալ զառ կինն կամակցութիւն օձին հաւանեցելոյ, և որ ՚ի նմայն և նոքաւ խօսեցաւ, զաստուածային հրամանս քո կենդանարարս և սուրբս որպէս զանօգտաբերս և անշահս կամ ոչ ճշմարիտ՝ սպուժեալ քամահէր․ և փոխանակ կենաց տարաժամ ճաշակմամբն իւրեւ զգեղ մահու զպտուղն ընտրեալ ընդունէր ։ Ի վերայ այսր ամենայնի ոչ միայն խոստովան ոչ լինէր ՚ի հարցանել անոխակալին, այլ և զքեզ բամբասէր գոլ պատճառ ստահակութեանն՝ զկինոջն տուր քո նմա յառաջ բերեալ, և զանիծիցն վճիռ

բանագատեալ զքաղցր և զհաշտ բնութեան քո կամօք՝ 'ի գլուխ և յարարածս վասն ինքեան՝ 'ի քէն եղեալս ընդունէր ։ Որոյ ոչ երկրորդ ինչ և ես, մանաւանդ թէ յոյժ առաջին 'ի չարութեան . վասն զի ոչ ըղձիով եւեթ և դուզնաքեաւ անցի պատուիրանաւ 'ի մոռացմանէ կամ 'ի հրապուրանաց , այլ զբովանդակն անտես արարեալ կամակար մտօք զհրամանս քո մեծամեծս և բազմաշահս , մատնեցի 'ի կորուստ յաւիտենական զանձն ։ Եւ ոչ ունիմ համարձակութիւն բանալ ըզբերան և ժտել առաջի քո , և խընդրել զքեզ յամենայն անձնէ և 'ի զօրութեան իւրեանց ։ Վստահանամ անկանել առաջի քո . դու և առանց զղջման ուրուք զանձառելի մարդասիրութեան քո հոսանս զեղեալ ծաւալեցուցեր յորդիս մարդկան ։ Քանզի այնպէս սիրեցեր զաշխարհս մինչեւ զՈրդին քո միածին ետուր . որոյ եկեալ քաղցրութեամբ և ինքնիշխանաբար 'ի լրումն բարերար կամաց քոց աղաղակէր

ասելով. Եկայք առ իս ամենայն վաստակեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ:

Եւ արդ բարձրացան քան ըզ-գլուխ իմ, մանաւանդ եթէ քան զերկինս եւս անօրէնութիւնք իմ, և քան զամենայն ծանրութիւն բեռանց 'ի վերայ իմ ծանրացաւ. Թեթեւացո տէր ողորմութեամբ քով. և շնորհեա հանգիստ 'ի տաժանական խղճէհարեալ և աշ-խատեալ մտաց իմոց. զխաւար մե-ղաց և անօրէնութեան 'ի չարէն սերմանեալ յիս՝ աստուածային ճա-ռագայթիւք շնորհաց և մարդասի-րութեան քո՝ փարատեալ մաշեա յո-գւոյ իմմէ. զխստութիւն սրտի իմոյ ջերմութեամբ սիրոյ քո դնելով յիս կակղացո, և զայլանդակ խոր-հրդոցն չարաչար բուսեալ փշոցն անտառս խլեա արմատաքի յանձնէ իմմէ. զսուրբ և զերկնային սերմանս զոր 'ի ձեռն մարմնացելոյ քո Բանիդ յաշխարհիս այսօրիկ անդաստանի սերմանեցեր, արդիւնացուցեալ ա-ճեցո յոգւոջ և 'ի մարմնի իմում:

Զչարին և որք ընդ նովաւ ապս_
տամբ զօրութեանցն և 'ի վերայ իմ
թափիչս կորստաբերս 'ի բաց հալա_
ծեա յինէն. և արժանի արա զիս
յայսմ հետէ տալ պտուղ քեզ բազ_
մապատիկ զոր սիրեսն և խնդրես 'ի
փրկութիւն անձին իմոյ ։ Մի դար_
ձուցաներ զերեսս քո 'ի խնդրուա_
ծաց իմոց Աստուած իմ. յիշեա
զյաւիտենից ողորմութիւն քո և
զգթութիւն, և լուր պաղատանաց
անկեալ և կործանեալ ծառայի քո ։
Տուր զամենակարող ձեռն քո և
կանգնեա զիս, վասն զի գործ ձե_
ռաց քոց եմ. մի յիշեսցին անօրէ_
նութիւնք իմ առաջի քո մարդասէր
և անոխակալ. որ ոչ կամիս զմահ
մեղաւորի որպէս զդառնալ և կեալ.
մի թողցես զիս մնալ յայսմիկ մե_
ռելութեամբ. և որ ընկալար ող_
ջութեամբ և համբուրիւ զստահա_
կեալ որդին բնաւորական 'ի քեզ
անճառելեաւ քաղցրութեամբդ և
սիրով ընթացեալ ընդ առաջ, մի՛ և
զիս մերժեր յայդպիսոյ կենդանա_
րար և փափագելի գթութենէդ.

զի և ես չքաւորեալ կողոպտեցայ 'ի հայրենի և յաստուածատուր Ճոխութենէն, չարապէս յաշխարհի և անհանճարաբար շրջելով ընդ կամակիցս այնպիսեաց խառնակ և անմաքուր վարուց, և յոյժ պատկառելով զնոյն արձակեմ՛ բարբառ, մեծապէս զանձն դատապարտելով և ստգտանելով, 'ի քոյդ ապաւինեալ ամենառատ մարդասիրութիւն և անպատմելի հեզութիւն. Հայր, մեղայ յերկինս և առաջի քո, և ոչ եւս եմ՛ արժանի կոչիլ որդի քո. զի թէպէտ և մեծամեծ են բազմութիւնք մեղացն որովք մեկնեալ հեռացայ 'ի քէն, այլ առ անչափելի մարդասիրութիւնդ լայնատարած խորովք իբրեւ զոչինչ երեւին. յոր յուսացեալ ստուգապէս իշխեցի անուանել և կարդալ զքեզ: Տուր ինձ 'ի լիախորտիկ սեղանոյ քումմէ փշրանս սովամահ տանջանօք 'ի կորուստ մերձեցելումս և բնաւ կորուսելումս. զմերկութիւն նշաւակութեան ծանականաց իմոց ծածկեա ողորմութեան քո պատմուճանաւ.

զխածատուածս գազանին բժշկեա և ամրացո, զի մի գտանելով մերկ՝ որ սպասէն հանապազ՝ արկանիցէ զժանիսն և գտանիցիմ միւսանգամ լքեալ, երթալ 'ի ճանապարհս քո ուղիղս: Նորոգեա յիս զպատկերին քաղցաշնորհութիւն՝ զոր ժանգացուցի վատթարագործութեանն աղմով. մերձեցիր 'ի հեռացեալս, ծարաւի եմ աստուածային ողջունի բերանոյ քոյ: Մի դառնալով 'ի բաց ըստ իրաւանց անբժշկելի զիս թողուցուս. 'ի գիւտ կորուսելոյս փութա մարդասէր, որպէս զի ուրախ լիցիս և խնդացուսցես առ հասարակ զքոյսն. կենաց և ամենայն բարւոյ իսկականի բնութիւնդ՝ զմեռելութիւն անձին իմոյ փոփոխեա 'ի կենդանութիւն: Եթէ յանգոյութենէ ածեր դիւրաւ 'ի գոյութիւն, Նորոգել զնոյնս դժուարի՞ն իցէ քեզ. և եթէ մեծամեծաց և անբաւից բաւական եղեր տալ բարութեանց, զիա՞րդ ոչ զփոքրագոյնս, որ է և մեծ՝ շնորհեսցես. զառաւել գերազանցագոյնն ամե-

նոյն մեծամեծաց բարութեանց և
զանյուսալին բաւականացար արա-
րածոց , միանգամայն և ամենեցուն
իսկ շնորհեցեր մարդկան զքոյդ հա-
մագոյ բան և միածին Որդի , մի 'ի
նուազագունէն զրկեր զիս ։ Լոյծ
զտոռաունս մեղաց իմոց . խզեա զա-
նօրէնութեան իմոյ կապանս . ըզ-
ծանրութիւն խոցոյ այսր չղթայիցս
խորտակեա ամենազօր . 'ի խաւա-
րային բանտէ աստի ընդարձակու-
թիւն և լոյս ծառայի քում շնոր-
հեա . արա ընդ իս վասն անուան
քում , թէպէտ և ես ընդ անօրէնս
եղի զբաժին իմ ։ Հալածեա և զնիւ-
թիչ կորստեանն իմոյ և զամենայն
մեքենայս որոգայթից նորա հրա-
մանաւ քով տապալեա . քանզի չիք
բռնութիւնք դժնդակք որ կարիցէ
կալ հակառակ ակնարկելոյ կամաց
քոց . 'ի սաստէ քումմէ կորիցեն
թշնամիք ծառայից քոց , և յահէ
քումմէ հալածեսցին ոյք ատեանն
զխոստովանողս աստուածութեան
քոյ . սէր ճշմարտութեան քոյ արն-
կեալ արմատասցի յիս , և յոյս

անխմանալի բարերարութեանց քոց զարթուցէ զթմբրութիւն մտաց իմոց 'ի սուրբ հրամանաց քոց կատարումն . որպէս զի ծառայ քո լինել և անուանել ըստ Ճշմարտութեանն արժանի եղէց , զպտուղ մեղացն՝ վասն որոյ այժմս զամօթի հարեալ եմ՝ կորուսանելով 'ի բաց . և զարդարութեանն քաջապտղութիւն բնաւորապէս յոգւոջ և 'ի մարմնի իմում հաստատելով առողմամբ արտասուաց քեւ ամենիմաստդ մշակեալ, քեւ ամրացեալ յապականչաց բարերարութեանն բերոյ , արժանի եղէց ընծայել այնպէս օրհնութիւն և պատիւ քեզ և միածնիդ քո Որդւոյ և Հոգւոյդ ելողի 'ի քէն . այժմ և միշտ և յաւիտեանս ։



# Բ.

## Աղօթք զղջման

### ԱՌ ՀԱՅՐ

ՀԱՅՐ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի որ զամենայն գոյացուցեր յանէից, զանմարմին և զանխմանալի բնութիւնս և զնիւթաւոր արարածս՝ 'ի ձեռն միածնի Որդւոյ քո համագոյակցի քեզ, և Հոգւովդ սրբով որ ելանէ 'ի քէն անճառաբար և առանց հատանելոյ եղականի բնութեանս, զքո բերելով յինքեան ընդ Որդւոյ ճշմարտապէս նմանութիւն ըստ բնութեան: Աղաչեմ զքեզ նայեա քաղցրութեամբ քով յանարժան ծառայս քո, և մի դարձուցաներ զերեսս քո 'ի պաղատանաց իմոց, թէպէտ և ես անառակեալ խոտորեցայ 'ի սուրբ ճանապարհաց քոց, և գոր-

ծեցի զհակառակս պատուիրանաց քոց, զայրացուցանելով զանձառելի քաղցրութիւն երկայնմտութեան քո ։ Այլ դու ամենագութ և մարդասէր, ներեա և մի մտաներ 'ի դատաստան ընդ ծառայի քում. մի առներ համար անօրէնութեանց իմոց, և մի յիշեր զբազմութիւն զազրալի և զանազան չարեաց իմոց. այլ դարձ առ իս մեծաւ ողորմութեամբ քով, և շնորհեա ինձ հեռացեալումս դառնալ առ քեզ. վասն զի քո է և առ 'ի քէն է ամենայնի փրկութիւն ։ Չեմ բաւական դառնալ 'ի չարաչար սովորութեանց մեղաց իմոց, եթէ ոչ ողորմութիւն քո շարժեսցէ զիս. և ոչ զօրեմ յառնել 'ի գլորմանէ աստի ծանրութեան մեղաց իմոց, եթէ ոչ ամենազօր ձեռն քո կարկառեսցի օժանդակել ինձ ։ Ամաչեմ աղաչել զոր բարկացուցիդ, և երկնչիմ կալ առաջի քո՝ գիտելով զդատաստան անձին իմոյ և զչափ անչափութեան մեղաց իմոց. այլ վստահացուցանեն զիս յիշատակք խորոց անքաւելի

մարդասիրութեան քո , և ժտել համարձակութիւն տայ ինձ անհասանելի խոնարհութիւն բարձրութեան քո ։ Վասն զի թէպէտ և մեծ են մեղք իմ, այլ յոյժ նուազ են քան զմարդասիրութիւնս քո ․ և թէպէտ և անհնարինք են անառակութիւնք իմ, այլ ոչ զօրեն անգութ զքեզ ցուցանել ։ Գիտեմ զի չեմ արժանի ողորմութեան քո , բայց դու և անարժանից սովոր ես ողորմել ։ Չեմ անտեղեակ անվճարական պարտեաց աղտեղի վարուց իմոց , սակայն յոյս ամենառատ կամաց քոց յորդորէ զիս բողոքել զանձնէ առաջի քո ։

Եւ արդ յո՞ դիմեցից բարերար , եթէ ոչ դու ողորմեսցիս ․ զո՞յր կոչեցից զանուն 'ի փրկութիւն , եթէ ոչ միայն կարողդ և մարդասէրդ ժամանեսցես ։ Մի պահեր ոխս անոխակալդ , մի բարկանար բնութիւնդ քաղցրութեան , մի արգելուր զշնորհս քո յինէն առատապարգևդ առ ամենեսեան ․ տուր առաւել քան զոր հայցեմս , և պար-

գեւեա բազմապատիկ՝ քան յա-
ղագս որոց պաղատիմս ։ Յիշեա զի
օտար է քեզ չողորմելն , և կամեաց
զոր յաւէտակից բնաւորապէս ու-
նիս . անսա զոր ախորժեան , և ըն-
կալ վասն որոց կամիս՝ և ուսուցեր
հայցել 'ի քէն . յորդութիւն բա-
րերարութեան ընդակից քո է , և
առատապէս զեղու կարօտելոց . և
չիք կարօտ և ցանկացեալ իբրեւ
զիս . Թողուլ զմեղս և անտես առ-
նել զանօրէնութիւնս՝ անճառելւոյ
գոյացութեան քո իսկակից է . և
չիք ոք մեղանչական և անօրինագոյն
քան զիս ։

Սիրես Հայր զբաշխմունս պար-
գեւաց . մի զրկեցայց ես աղքա-
տացեալս քան զամենեսին . ոչ
կամիս զմահ մեղաւորաց , այլ և
կանգնես նա . տուր ինձ յարու-
թիւն 'ի մեռելութենէ մեղաց իմոց ։
Ահաւասիկ առաջի քո խոստովան
լինիմ զխղխայթեալ վիրաց հոգւոյ
իմոյ զանհնարին ցաւս . բժշկեա
յամենայնի կարողդ , և մի տար հե-
ւանդանալ միւսանգամ . բաւական

ես ինձ առ 'ի կորուստ՝ 'ի մանկութենէ ցայժմ գործեցեալքն յինէն չարեաց բազմութիւնքն, յայսմ հետէ կորզեալ յափշտակեսցես տէր զթշուառական անձն իմ: Հեռացայ, մերձեցո առ քեզ. մոլորեցայ, խնդրեա. կորեայ, գտանել խորհեսցիս. տես ամենագութ ըղտառապանս իմ, և մի գարշիր յաղտեղեալ անձին իմոյ տգեղութենէ. լուասցես աճառովք ողորմութեան քո յինէն զժանտացուցիչս ամենայն գեղղս անձին: Դու որ 'ի կորստեան անօրէնեալ ազգին ապրեցուցեր 'ի ջուրցն սասանկութենէ զսիրելին քո զՆոյ, կարօղ ես և զմեղաց ցամաքեցուցանել զհոսանս, և զընկղմեալս վերածել զանձինս. վասն որոյ և առաքեցեր զՈրդիդ քո միածին առ անհասանելւոյ բանի նախախնամութեան քո, որպէս զի իւրով մարդեղութեամբն վասն ազգի մարդկան հասարակաց կորուսելոց 'ի յորձանաց անօրէնութեանց ընձեռեսցէ փրկութիւն յաւիտենական և Ճշմարիտ. որոյ չարչարանօքն ա-

րարեր մոռացութեն մեղաց լինել առաջի քո համօրէն՝ որոց հաւատացին որդի քո զնա, որ էրն իսկ ճշմարտութեամբ՝ դու: Եւ ես թէպէտ և շաղախեցայ գործովք անօրէնութեան, այլ՝ի հաւատս անդ՝ զոր ընկալաւ եկեղեցի քո յաշակերտութենէ ուսման հրամանաց նորա՝ կացի առանց երկմտութեան, և կացից մինչեւ ցվախճան, միոյ խոստովանելով բնութեան զերեքանձնեայ աստուածութեանդ էութիւն. զոր մատուցանեմ առաջի քո որպէս ընծայ ընդունելի, յայմէ ամենայնէ կապտեալ գոլով և աղքատ, զոր ունէին ծառայք քո՝ զամենաբարւոք փարթամութիւնն վարուց, զոր և ինձ այժմ տացես ողորմելով: Ես ինձէն իմովք կամօք վարատեալ՝ի կամաց քոց՝ մատնեցայ աւազակաց, և կորուսի զճոխութիւնն. այլ դու միայն աննենգդ և որդեսէր տուր ինձ վերըստին զառաջինն: Վիրաւորեցայ յորոց եղէ ուղեկից անմտութեամբ, բժշկեա դարձեալ ստեղծիչդ բարի.

*և տուր զիս կատարեալ ամենայնիւ,
զոր սահմանեցեր 'ի բնէ ստեղ-
ծուածին մերոյ. և որովք կրկին
անգամ վարդապետեցեր 'ի ձեռն
առաքելոց քոց և մարգարէից. որ-
պէս զի արժանի եղէց բանալ զբե-
րան իմ 'ի պապանձմանէ սաստի
ամօթոյ մեղաց իմոց՝ 'ի փառաբա-
նութիւն ամենասուրբ Երրորդու-
թեանդ, Հօր և Որդւոյ և Հոգւոյն
սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս
յաւիտենից. ամէն:*



## Գ.

## Աղօթք 'ի դէմս մանկանց

### ԱՌ ՀԱՅՐ ԱՍՏՈՒԱԾ

ԱՌԱՏ յամենայն տուրս բարեաց, փարթամացուցիչ աղքատաց. էապէս և միշտ բարի, Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով արարեր փրկութիւն կորուսեալ ծննդոցն Ադամայ, և կանգնեցեր վերստին զորս 'ի ձեռն նորա ստեղծեր 'ի պատկեր կերպարանի քո՝ զանկեալս 'ի կենաց. և զնենգիչն կենաց ծառայից քոց զխորամանկն 'ի բանսարկութիւն և յամենայն որ ինչ ոչ է հաճոյ քեզ՝ արկեալ 'ի խոնարհ, ընկեցեր յիշխանութենէ չարչարանօք Քրիստոսի քո. և զյաղթահարեալսն 'ի նմանէ հաներ 'ի վերայ գլխոյ նորա: Հայեա քաղցրութեամբ 'ի ծառայ

քո անպիտան , և մի տար թոյլ յաւանել ինձ հակառակ դաւաճանին չարի . մանաւանդ եմ ես և արհամարհեալ . ամենակատար զօրութիւնդ և անսկիզբն էութիւնդ լեր ինձ ամրութիւն և յարկ ծածկութեան 'ի պատերազմաց նորա . հայր որբոց , խնայեա յանկատարութիւն տիոց մարմնոյ և մտաց իմոց . երկնչիմ 'ի կամակոր և 'ի թունալից օձէ անտի , դուցէ անկայց վասն դիւրագայթ բնութեանս և անլրութեան տիոցս և խակութեան մտաց իմոց ընդ խածմամբք ժանեաց նորա : Այլ եցո զիս տէր , զահ անյաղթելի զօրութեան քո արկանելով 'ի վերայ նորա . և տուր ինձ կատարումն մարմնոյ , հոգւոյ արութիւն , բարուց հաստատութիւն , կեանս հաճոյականս բարեսէր կամաց քոց : Զինեա զիս ամենայն զգուշական սպառազինութեամբ ընդդէմ չար պատերազմողին , որպէս զԴաւիթ ծառայ քո հակառակ Գողիադու . հան զիս 'ի գբոյ տառապանաց անգիտութեան , ուր ոչ գոյ ջուր քաղցր և

ամենախորժ կեցուցիչ սիրոյ քո. որ հաներ զՅովսէփ 'ի գբոյ մահու և 'ի տանէ կապանաց յաթոռ թագաւորութեան: Պարգևեա ինձ զսիրելին քո զիմաստութիւն և ըզհանճար, գնալ առաջի քո անմոլար ճանապարհաւ և անսայթաք ոտիւք մտաց. որ ետուր զհոգի քո 'ի վերայ մանկանն Դանիելի՝ 'ի պատիւ նմա, և 'ի կշտամբանս վաւաշոտութեան զակատեալ և մոլեգին ծերոցն: Առաքեա ինձ, Հայր, քաջալերութիւն 'ի բարձանց քոց, և զօրութիւն աներկեղութեան յամենեցունց՝ որք կան հակառակ հրամանաց քոց. որպէս զի մի խաբեցայց 'ի սնոտի կենցաղոյս այսորիկ, որ սովոր է գողանալ զմիտս անհաստատս և դիւրաշարժս, և հեռացուցանել 'ի քէն, կարծիս տալով զեղծանելեացս՝ որպէս թէ իցեն կայունք և անշարժելիք: Որ զօրացուցեր զմանկունս զԱնանիանն ընդդէմ կալ բռնաւորական հրամանացն, և ընտրել զմահու ծանրութիւն, և խիստ կապանօք 'ի հուր

բորբոքեալ սաստկապէս, զի մի ինչ յոչ հաճոյիցն քեզ երեւեսցի 'ի նոսա. և զի մի հեռասցին 'ի սիրոյ քումմէ, որ է գանձ անճառելի և ճոխութիւն յաւիտենական: Բարձրացո 'ի ստորայնոցս զմիտս իմ. և մերժեա 'ի հոգւոյ իմմէ զբաղձումն սորա. խաւարեսցին աչք մտաց իմոց 'ի տեսիլ սիրոյ սորա, զի զքեզ միայն տեսից կորովութեամբ աչաց 'ի պարգեւէ քումմէ լուսոյ անիմանալի, 'ի քեզ ցնծացայց անտխուր և անլուծանելի ուրախութեամբ:

Մանկութիւն իմ քեւ և 'ի սէր քո զբաղեսցի, կատարելութիւն իմ քեւ փառաւորեսցի, ծերութիւն իմ քեւ պարարտասցի, մահ իմ քեւ կենդանասցի, և ամենայն կենաց իմոց դու եղիցիս մասնակաբար և կարգաւորիչ վայելչապէս: Տես մարդասէր զպաղատանս անձին իմոյ, լուր աղօթից չքնաղից իմոց, պարգեւեա ինձ զխնդրուածս իմ. մի ունայն արձակեսցես զիս յերեսաց քոց Թագաւոր առատապարգեւ. զարդարեա զանզարդութիւն

իմ՛ կատարմամբ աղօթիցս այսոցիկ· զի եղէց ոչ բնաւ հեռանալով՝ ՚ի քէն՝ Թոշակեալ ամենայն պարգեւօք բարեաց· զոր տեսեալ Թշնամեաց իմոց որք ատենն զքեզ , ամաչեսցեն նկուն եղեալ· և որք սիրենն զքեզ՝ փառաւորեսցին առ ՚ի քէն , և լցի մեծարանս անարգութեան իմոյ· և և ես արժանի եղէց փառաւորել զքեզ ընդ Որդւոյ քում միածնի , և ընդ Հոգւոյդ սրբոյ , այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից· ամէն։



## Դ.

# Աղօթք

### ԱՌ ՔՐԻՍՏՈՍ ՅԻՍՈՒՍ

ՈՐԴԻ Աստուծոյ՝ միածին Յիսուս Քրիստոս, ամենայնի արարիչ որ երեւին և որոց ոչ տեսանին, անբաժանելի ընդ Հօր, ծնունդ անճառելի էութեան նորա, կատարեալ ամենայնիւ՝ որպէս յորմէ եսդ. ճշմարտութիւն՝ որդի ճշմարտութեան, յԱստուծոյ՝ Աստուած ճշմարիտ. բարի ՚ի բարւոյ. ՚ի կենաց կեանք. ՚ի լուսոյ լոյս անիմանալի. ժամանակաց՝ և որոց ՚ի ժամանակի և ընդ ժամանակաւ գոյացուցիչ յոչնչէ. անժամանակ և նախայաւիտեան որդի Հօր։ Նոյնակերպ և նոյնագոյ ծնողին զքեզ, անհասանելի բնութիւն, անբովանդակելի ընդ Հօր քում և ընդ Հո-

դւոյ ելողի 'ի նմանէ՝ Աստուած ։ Յատկապէս ծնեալ՝ և միայն՝ և 'ի միոյ միածին . որ զամենայն բերես բանիւ զօրութեան քո , զորս ածեր 'ի գոյութիւն . զամենայն լնուս , և ինչ մերձենալ 'ի քեզ ոչ կարէ . զբովանդակ պարունակես զարարածս , և յիմքէ ոչ պարագրիս , փառաւորեալդ յերկնաւորաց անմարմին գոյացութեանց ։

Յորոյ ակնարկութենէդ դողայ երկիր , սասանին լծակիցք նորա տարերք , ծխանին լերինք մերձենալով , վառանին անտառք , բլուրք հալին , սիւնք երկրի թռանին , երկիր դողայ , ալիք ծովու հնազանդին , զօրութիւն նորա իշխի . քանզի փակեցեր որպէս գրամբք չնչին աւազով ։ Որ ասես արեգական և ոչ ծագէ , և կնքես ընդդէմ աստեղաց . որ առնես զմեծամեծս և զանքննինս և զհրաշակերտս , որոց ոչ գոյ թիւ . որոյ կամաց տեղի տան բնութիւնք սերտեալք և անշարժք յինքեանս . ընկրկի գետ ; բաժանի ծով . վէմ անծին և ապառաժ ստեամբք վտա_

կայ ջուրց արբուցանէ զծարաւիս . անդայրս և փափուկ բնութիւն օդոյ՝ կերակուր մշակեալ իջուցանէ քաղցըր . արեգական և լուսնոյ մշտաշարժութիւնք դադարեն երբեմն , և ընթանան հակառակաբար . սոսկան ահիւ տագնապեալ ամենայն գերաշխարհիկ զօրութիւնք . վասն զի արարչի և կառավարի ոչ կարասցեն անհլու և ստունկանող լինել նախախնամեալքն և արարածք :

Դու 'ի լրման ժամանակաց առաքեալ 'ի Հօրէ՝ եղեր 'ի կնոջէ , անեղանելեգ ըստ բնութեան , անժամանակդ՝ ընդ ժամանակաւ , և էդ ընդ լինելութեամբ . արարիչդ՝ արարեալ , մարդ՝ Աստուած և տէրդ , Թագաւորդ՝ ծառայ , սկսեալ անսկզբնական էութիւն . որպէս զի անդրէն դարձուցանելով զհնարաւորն քեզ՝ շնորհեսցես մեզ զաստուածային բարեփառութիւնն . մարդանալովդ՝ զաստուածութիւն , զբարձրութիւն՝ խոնարհութեամբ , կարօտութեամբ՝ զլիութիւնն , զճոխութիւն՝ աղքատութեամբ և անան-

կութեամբ · ծառայութեամբ՝ զա֊ղատութիւն · և միանգամայն քեզ անվայելչականօքն՝ զվայելչուչն մե֊ծութեան քո և մարդասիրութեան ։ Եւ կատարած կնքոյ ըստ մարմնոյ անօրէնութեանն զխաչիւ մահուն չարչարանս · քանզի ընդ անվճար պարտուց դատաստանի մահու ան֊կեալք մեք՝ ատելիք մանաւանդ , քան թէ ողորմելիք՝ յաղագս կամա֊ւոր անբանութեանն էաք ։ Իսկ դու առատ ողորմութեամբ և անպա֊տում սիրով , գութ բարերարու֊թեան զմէնջ ունելով հատուցանել անձամբ զմերն կամեցար պարտիս , ընծայ պատարագի զքեզ ինքն մա֊տուցեալ Հօր քում՝ փոխանակ պար֊տաւորաց մահու յաւիտենականի , ազատեցեր 'ի կորստենէ զորդիս մարդկան · անմահդ մեռանելով ըստ մարմնոյ՝ կեցուցեր զմեռեալս ամբարտաւանութեամբ և գործովք չարեաց · անմեղդ և անպարտ որպէս զորդի Աստուծոյ և Աստուած՝ զմե֊ղապարտութեան յաղագս մեր ըն֊կալար դատաստան · միանգամ մե֊

ւոր մարմնով՝ անմահ ըստ ինքեան քեզ, և յաւիտենական մեզ եղուր փրկութիւն. զհակառակ մեր դատապարտութեանն վճիռ բարձեալ 'ի միջոյ՝ բևեռեցեր ընդ խաչափայտին. յանիծից օրինացն և յորոց 'ի սկզբանէն փրկեցեր զմեզ գնեալ, յաղագս մեր լինելով անէծք. համանգամայն բարձեր զմեղս աշխարհի արեամբ պատարագի քո անբծի և անարատի գառինդ Աստուծոյ, մատուցեալ զենումն Աստուծոյ Աստուած: Ո՛վ անճառելեացս. փոխանակ մարդկան Թշնամեաց և հեռացելոց՝ սիրելիս և մերձաւորս արարեր. ժառանգակիցս քեզ, ժառանգս Հօր քո. զբնութիւն հողեղէն և անպատուեալ մեղօք՝ եղբարքս քեզ: Ո՞ լուաւ, ո՞ ետես յամենայն յաւիտեանս այսպիսի ինչ. ո՞ խօսեսցի զզօրութիւնս քո, կամ կարասցէ լսելի առնել զամենայն օրհնութիւնս քո. զի՞նչ կարասցուք հատուցանել ընդ պարգևաց քոց. ո՞ խորհեսցի արժանապէս ընդ միտս իւր գէթ՝ զայսպիսի անպատում

շնորհաց․ զի՞նչ է 'ի մեզ անբաւ մե-
ծութիւն խորհրդոյս․ զմարդիկ աս-
տուածացուցեր Աստուածդ ամե-
նայնի և տէր․ զորդիս չարին 'ի բաց
կորզեալ հզօրդ՝ արարեր որդիս Աս-
տուծոյ Հօր քո․ զարժանաւորս
մահուն անմահի՝ յանմահութիւն
փոխեցեր․ զծառայեցուցիչ բանսա-
ւորն՝ կոխան ետուր ոտից ծառայից
քոց ։ Պաշտելիդ և երկրպագելի
Աստուածդ ճշմարիտ պաշտեցեր
զմարդիկ ծառայաբար սպասաւորե-
լով․ զմարմին և զարիւն քո ջամբե-
ցեր և արբուցեր մեզ յերկնից ի-
ջեալ հացդ 'ի փրկութիւն հոգւոց
և մարմնոց մերոց ։ Ո՛չ ամօթ համա-
րեցար կրակից մեզ լինել անախտդ
Աստուած․ ոչ զզուեցեր զբնու-
թիւն աղտեղեալ և գարշելի մերոյ
եղեալ․ ոչ անարգանս վարկար և
գործ անպատշաճ փոխանակ մեր
մեռանել ։ Փառք տէր անչափ սիրոյ
քո, օրհնութիւն քեզ մեծդ ողոր-
մութեամբ և յամենայնի գթած․
օրհնութիւն անճառելի խոնարհու-
թեանդ քո․ պատիւ անսահմանելի

բարձրութեան քո . փառք չարչա-
րանաց քոց՝ Աստուած իմ Յիսուս
Քրիստոս . օրհնութիւն մահու քո՝
կենանք մեր . երկրպագութիւն և
շնորհ յարութեան քում՝ անմա-
հացուցիչ մեր ։

Մի տնտես առներ զփրկեալս
չարչարանօք քո, և զբարձրացեալս
խոնարհութեամբ քո . մի թողուր
միւսանգամ անկանել յերեսս իւ-
րեանց՝ զորս ժողովեցեր աշխա-
տութեամբ քով՝ հանդիստ ամե-
նեցուն , և անվաստակ որպէս
Աստուած յաւիտենական ։ Մի
քայքայեալ ցրուեսցէ , որ օձ-
տեաց և ապականեաց երբեմն . մի
դարձեալ խրոխտասցի գոռոզն չար
մերովս կորստեամբ և վարուց խառ-
նակութեամբ ։ Գլորեցաք, կանգնեա
վերստին . թշուառացաք 'ի մեղս մեր
յոյժ , և կամք ըմբերանեալ յան-
համարձակութենէ . զերանութեան
քո շնորհ արկանելով դարձեալ 'ի
վերայ մեր՝ ընդարձակեա զբերանս
մեր լնուլ գովութեամբ , յօրհնել
զփառս քո հանապազօր և զմեծվայ-

ողջութիւնս քո ։ Կրկնեցաք զՃանապարհս մեր անօրէնս , յետս կացաք յօրինաց քոց փրկաւէտաց , անտես արա վասն հեղման արեան քո պատուականի ։ Մի ըստ մեղս մեր դատեսցիս զմեզ , և մի ըստ անօրէնութեան մերոյ հատուսցես մեզ . յիշեա զժողովուրդ քո զոր ստացար 'ի սկզբանէ 'ի ձեռն խոնարհութեան և մահու քո , և մի մոռանար զվիճակ ժառանգութեան քո զոր փրկեցեր ։ Դրացիք մեր ամբարիշտք նախատեն զմեզ՝ կորագլուխ զմեզ առնելով և կոխան ոտից . զերծուսցես զմեզ վասն անուան քո հզօրի ։ Տանջեսցի Փարաւոն , Եգիպտոս սատակեսցի . դարձեալ փառաւորեսցի ժողովուրդ քո բարետոհմիկ և սիրեցեալ . պարիսպ այգւոյ քո նորոգեսցի վերստին . բարձրասցի ցանկն , աշտարակքն կանգնեսցին , մի կոխեսցեն զսա անցաւորք Ճանապարհաց . գազանք փախիցեն . ընդմէջնաշաւիղն խցցի , կարկատեսցի խրամատութիւնն , փուշքն խլեսցին յարմատոց , վայելչասցի քաջապտղո-

ղութեամբ այգւոյն , որբեացի յառա-
ւել եւս պտղաբերութիւն , ուրա-
խացի մշակողն բարի , և անկագործն
յամացէ , կակղացուսցէ , արբուսցէ
առատութեամբ հոսանացն քաղ-
ցունց . մի ինչ պակասեցուսցէ 'ի
դարմանոցն պտղաբերութենէ : Եւ
դու այգւոյդ առաջին և ճշմարիտ , մի
մնացուսցէ զուռ քո ապականիչ և
ժանդագործ մարախ , մի՛ իմանալի և
մի՛ զգալի . ամենեքեան նոքա թա-
ռամեսցին տկարացեալք զօրու-
թեամբ քո մեծաւ : Մի և նշխարն
դառնութեան երեւեսցի 'ի շաւիղս
քո . քաղցրութիւն քո սաստիկ՝
մաշեսցէ զդառնութիւնն , և անոյշ
ճաշակ քո ամոքեսցէ զտապտկալին
մեր : Տէր , տեսանես զվարատումն
երամոց աղաւնեաց քոց յորսորդաց
չարաց . տեսանես զդահավիժու-
թիւն հօտի քո 'ի գազանաց շաղղա-
կերաց , մի անփոյթ առներ աղա-
չեմք , այլ հալածեա զերկաքանչիւ-
րոցն յանդգնութեամբ 'ի վերայ
մեր յարձակմունս : Ի գրկաց քոց
հզօր ոստիցեն 'ի սպանումն նոցա

Նուէրք սրբեալք յաղեղանէ սրբա-
մտութեան քո․ որպէս զի զաւակունք
քո և մանկունք աւազանին սըր-
բոյ ապրեալք և ազատեալք՝ բարձ-
րացուսցեն զքեզ օրհնութիւն ընդ
Հօր քում և ընդ Հոգւոյդ սրբոյ․
այժմ և միշտ և յաւիտեանս յաւի-
տենից․ ամէն։



# Ե.

ՀԱՅԵԱՑ տէր 'ի տառապանս սըր-
տի իմոյ. տես զվէրս անձին իմոյ.
բժշկեա զմահաբեր ախտ հոգւոյ ի-
մոյ. քեզ մեղայ, փրկութիւնդ հա-
ւատացելոց քոց. զանձն իմ մատ-
նեցի ախորժելով գազանին յափըշ-
տակողի. եկեր զիս եկուլ զիս վի-
շապն ապստամբ և կամակոր. այց
արա ինձ, որ եկիր դարձուցանել 'ի
խորոց անդնդոց, և կորզեցեր 'ի մի-
ջոյ ժանեաց նորա զորդիս հաւա-
տոց: Մարդասիրութիւն քո յաղ-
թեսցէ, շնորհք քո յաւելցին պայ-
ծառանալ. աւազակն ամաչեսցէ,
բռնութիւն նորա խափանեսցի յիս
զօրութեամբ աջոյ քո: Զմեղաւորս
եկիր կոչել, զհիւանդս բժշկել. մի
զինէն մոռացումն եղիցի քեզ տէր,
վասն առաւելութեան ցաւոց և մե-
ղաց իմոց. քեզ անկարելի չիք ինչ,

բարերար և հզօր, յորս կամեսցիս ։
Ես դարձայ 'ի բարեաց, պատսպա-
րեա ինձ՝ տալ 'ի բարութենէ քում-
մէ զպատուիրանաց քոց այսուհե-
տեւ պահեստ անսխալապէս. բե-
կումն սրտի, որով ողջանան խոր-
տակմունք անձին. արտօսր ցաւա-
գնական, որով ողողանի աղտեղու-
թիւն տղմոյն մեղաց. աղօթք ընդու-
նելիս քեզ, որովք հաշտի մարդա-
սիրութիւն քո, զոր ցասուցի խո-
տորնակ վարուք իմովք. միանգա-
մայն և զոր սիրես, և որքան ինչ
հաճոյ իցէ ամենակեցոյց և մաքրա-
գործող կամաց քոց ։

Խաւար խիտ և թանձրահոծ արկ
'ի վերայ աչաց իմոց. լոյս գերա-
պայծառ անարգել՝ տուր ինձ նշոյլ
տեսանելոյ զճանապարհս սիրոյ քո,
և զհանգստեան՝ աշխատելոյս մե-
ղօք ։ Խուլ եղէ, և խոնարհեցայ,
ոչ կամելով անսալ փրկական բանից
քոց խրատու. մի արգելուր զմա-
տունս քաղցրութեան շնորհաց քոց
արկանել ընդ ականջս իմ, և բարձ-
րացուցանել հանել զիս՝ յոր սողե-

ցայ իջի 'ի խորխորատէ թշուառութեան ։ Ոչ պահեցի զսերմանս բանի քո . ոչ ետու արդիւնս արմտեաց քոց որպէս երկիր պարարտ . թէպէտ և ոռոգեցայ բազում անգամ անձրեւով շահեկանաւ . փուշք և տատասկք մոլեցան յիս իբրև 'ի խոպանի . մի իբրև զանպիտան երկիր անիծաներ զիս՝ մատնելով հրոյ անշիջանելւոյ և նախանձոտի՝ յուտել որպէս զհակառակորդ ։

Գողայան տարք ոչ զվաստակս իմ, քանզի ոչ ունէի 'ի բարեաց ինչ, այլ զանձն իմ գլխովին . յափշտակեացէ զիս ողորմութիւն քո տէր՝ ոչ տալ գազանաց զանձն որ խոստովան առնիցի առ քեզ ։ Զենումն քո 'ի խաչին, և աղբերքն արեան և ջրոյ զախեղձերաց մաքրեցին զաղտեղութիւն և ողջացուցին զմեռելութիւն . մի ես որոշեցայց յառատութենէ շնորհին անճառելւոյ ։ Կորեայ և տնանկացայ՝ վատ գոլով ծառայ և ապիկար 'ի գործ արքունի, ճոխացուցանող և բախտապարգեւ՝ որպէս ողորմող և անյիշաչար տէր,

գտցես և արժանացուսցես յարկի փառաց քոյ ընդ մերձինս ծառայից քոց. Թէպէտ և ոչ կրեցի, այլ գործեցի զանտեղիս. սակայն և ըզ-կամակորն 'ի նախայօժարութենէ գործողին սովոր ես Թողուլ' 'ի վեր քան զբան գոլով մարդասէր: Մի յիշատակեսցին առաջի քո անչա-փութիւնք գործոց իմոց չարեաց. Ձրի են առ ամենեսեան պարգեւք քո, անբաւ են բաշխմունք ողորմու-Թեան քո, անաչառ ես տէր 'ի բա-րերարութիւնս առատութեամբ: Մի վասն իմ փոքրկասցին կարկա-ռումն ձեռաց քոց. և շնորհաց քոց յորդաչափութիւնք մի աղօտասցին իբրեւ առ անարժանս: Զմահապարտ կեցուցանել ողորմութեամբ' բարե-հռչակ զԹագաւոր ընդարձակ մտօք առնէ. իսկ իրաւամբք միայն գնալ' հասարակական է որոց իշխեն: Եւ ո՞վ իցէ զուգական 'ի բարիս առնել անարժանից և 'ի մահուանէ դար-ձուցանել զարժանաւորս' քեզ, և կամ նման սաստերի ողորմութեան քո, նուաղեալ բիւրօք բազմօք յան-

կանելն չափոյ համեմատութեան ։ Ըստ մեծութեան քում ծառայեացին տուր պարգեւաց քոց ․ ըստ փարթամութեան քում կարօտութիւնս իմ լցցի ․ ըստ այցելութեան քում կորստականութիւնս իմ գըտցի ․ մի ինչ՝ այլ քեւ սահմանեսցի ընդարձակութիւն ձեռին քո ․ մի ես՝ այլ դու եղիցիս կանոն մարդասիրութեան քեզ ինքեան ․ մի որպէս ես աղաչեմ՝ այլ որպէս դու կամիս պարգեւեա ինձ ․ ոչ ըստ փոքրկութեան յուսոյ իմոյ, այլ ըստ անբաւ մեծութեան կամաց քոց 'ի պարգեւասիրութիւն՝ զեղուսցես յիս ․ չափ փոքր և կիսալիր, կամ անշարժ և թաթաղման անփորձ՝ 'ի շտեմարանս քո ոչ գտանի ․ քանզի ամենափարթամ և առատապարգեւթագաւորի՝ անթերի 'ի յորդառատութեանն զգանձական մթերայնոցն ունողի՝ ոչ վայելուչ է ճշգաչափութեանն և կշռութեան հրաման, և ոչ ըստ ժամանակի փոփոխման այլազանութիւն ․ ոչ և ակնառութիւն երեսաց և պատուոյ՝ որք

ժամին առնուլ՝ յորմէ ստեղծ զամե-
նեսեան, և սիրէ նովին չափով կա-
մաց: Եւ զիա՞րդ ես տէր՝ միայն գը-
տանիցիմ աղքատեալ առ դուրս
արքունեաց քոց յայնքանեաց և
յայնպիսեաց մեծաշահութեանց:
Չի թէպէտ և մեղայ յոյժ, սա-
կայն քո եմ. և ոչ դարձուցանել
զերեսս 'ի խնդրողաց կարողութիւն
է քեզ. և սիրել, որ ետուր զքեզ
ինքն փրկանս գերելոց, և ազատե-
ցեր համօրէն զորս հաւանեցան ա-
ւետեաց քոց: Եթէ յարիւն քո ոչ
խնայեցեր հեղուլ վասն մեղաւո-
րաց, զդոյզն մի հայցուածս շնորհի
արգելու՞ս մարդասէր: Եթէ զմար-
մին քո լի արարեր 'ի սեղան կերո-
ղաց զքեզ, զանկեալ փշրանսն ո՞չ
պարգեւեսցես կարօտի և սովեցե-
լոյ, թէպէտ և անուանեսցես շուն:
Մի՛ տէր մի՛ Աստուած բարերար, մի
զոր ոչն երբէք արարեր առ ոք,
քանզի ողորմած ես, արասցես առ
իս. այլ դթա ընդունելով զբանս
պաղատանացս այսոցիկ. որպէս զի
և ես ընդ գտեալս 'ի քէն ողորմու-

Թիւն և պարգևս բարի՝ արժանի ե-
ղէց գոհանալ զքէն և փառաւորել
զքեզ ընդ Հօր քում և ընդ Հոգւոյդ
սրբոյ՝ այժմ և միշտ և յաւիտեանս
յաւիտենից · ամէն ։



# Գ.

## Աղօթք

### ԸՆԴԴԷՄ ՀՈԳՒՈՅՆ ՀԱՅՀՈՅՈՒԹԵԱՆ

ԿՈՐՈՒՍԵԱԼ անձին իմոյ այցելու մարդասէր, և լոյս անստուեր խաւարեալ մտաց իմոց, Որդի Աստուծոյ, միածին բան և նկարագիր էութեան Հօր քո. անեղանելի և ամենայն եղելութեան արարիչ և գործակից քոյոյ ծնողին. որ հաճեցար լինել մարդ ըստ ճշմարտութեան, անփոփոխելի և առանց այլայլութեան միացեալ ըստ բնութեան մեծութեան քում. և հաւասար լինել ծառայից քոց և առ 'ի քէն գոյացելոյ կերպարանին՝ ոչ անարժան համարեցար: Յանպատմելի բարձրութիւն քո մնալով առանց կարծեաց՝ իջեր յանչափ խոնարհութիւն. և զչարչարանս առեր յանձն

անչարչարականդ՝ չարչարելի մարդ-
կային բնութեամբ. զի զվտանգեալս
չարչարանօք մեզաց ազատեսցես որ-
պէս բարերար: Մեռար մարմնով
անմահդ, և միշտ կենդանի և կեանք
ըստ բնութեան. որպէս զի զմեռե-
լութիւն մերոյ բնութեանս կանգ-
նեսցես յանմնայնի կարողդ: Հայեաց
և այժմ 'ի տարակուսեալ մեղօք
անձն իմ. զերծո զըմբռնեալս 'ի
վիշապէն՝ զթշուառական հոգի իմ.
դարձո 'ի գլուխ նորա զսերմանեալն
'ի միտս իմ առ 'ի նմանէ զխոր-
հուրդս անօրէնութեան: Գիտես
տէր, որ քննես զխորհուրդս և
զսիրտս մարդկան, զի այսպիսւոյ
դժնդակութեան չէ կամակից միտք
և ախորժակք իմ. և համարիմ բա-
րի ինձ յոյժ զմահ պատուհասի և
տանջանաց՝ քան զայնպիսի մտա-
ծութիւն, յոր ոչ երբէք յօժարեցի
'ի կամս իմ, և ոչ բնաւ քաղցրացաւ
ինձ: Արգել յինէն փրկիչ զայն-
պիսի թոյնս գազանին. մի զի՝ որ
ոչ երբէք կամեցայ թէ խորհեցայց
այնպիսի օձիւս, պարտաւորեսցես,

այլ զնա որ ընդ քեզ յանդգնեցաւ 'ի կռիւ իջանել: Ոչ ակնածեաց, ոչ երկեաւ, ոչ զարհուրեցաւ յաստուածային քումմէ իշխանութենէ և 'ի զօրութենէ. լրբեցաւ ասել զհայհոյականսն առաջի ամենայաղթ և անպարտելի զօրութեան քո, և դու ներեցեր տէր. Թէպէտ և ետուր սաստիւ պատասխանի: Սաստեա և արդ գթածդ և բարեխնամ յայնպիսի չարեացն սերմանիչ և մշակ. մերժեալ հեռացո և յինէն ըստ որում կամեցարն յայնժամ. և ինձ ներեսցես՝ լինելով քաւիչ և ողջացուցիչ: Եթէ ոչ բարկութիւն քո կործանեսցէ զնա, զիարդ ես տկար և անզօր գոլով կարացից մարտնչել ընդ չարութեանն արուեստաւորի. որ երբեմն յայնքան իշխեաց գալ լկտութեան լրբութիւն, մինչ զի աթոռ 'ի բարձունս հակառակ քեզ կարծեաց զիւր, և ասաց դնել յամպս և 'ի մէջ աստեղաց: Վասն որոյ իջուցեր զնա 'ի դժոխս ամանս, և մատնեցեր խաւարի մինչեւ 'ի ժամանակ մի, ցոր-

ժամ եկիր առ ծառայս քո գե-
րեալս 'ի նմանէ . հզօրդ քան զհզօրս՝
կապեցեր զնա , պահելով յօրն հա-
տուցման՝ բովանդակ իւրոյ անօրէ-
նութեանն և չարութեան :

Արդ զի նեղեալ եմ ես վաղվա-
ղակի լուր ինձ առնել զդատաստան
յոսոխէն իմմէ . քանզի ձանձրացու-
ցիս հոգի իմ, և սիրտ իմ խռովե-
ցաւ յիս : Զխածմունս գազանին
ողջացո փրկիչ . զմուխ նետից նորա
յարձակմունս յանձն իմ՝ բժշկեա
ողորմած և անոխակալ . զչարաչար
յարձակմունս նորա 'ի վերայ սան-
ձիւք ցասման քո նհանջեա ընդ-
կրունկն . յափշտակեա զիս 'ի ժա-
նեաց նորա կարօղդ յամենայնի .
փշրեաց զոսկերս իմ, և ելից յինէն
զկուշտ իւր անհագինն անուանեալ
վիշապ . դու որ ողորմիսդ կորու-
սելոց յայսպիսի թշուառութեան՝
հնարեցիր անձին իմոյ փրկութիւն :
Հեղձոյց 'ի խաւարի զկեանս իմ ե-
ղեալն կամօք խաւար , բնաւորապէս
լոյսդ ճշմարիտ ծագեա ինձ յամե-
նասփիւռ ընդարձակ ճառագայթից

քոց ։ Զիջխեմ բանալ զբերան իմ առաջի քո․ կարկեցան 'ի համարձակութենէ շրթունք իմ, ծածկեաց զիս ամօթ երեսաց իմոց․ սակայն վստահանալով յանպատմելի անոխակալութեան քո անդունդս՝ մատուցանեմ քեզ պաղատանս․ մի դատարկ և ունայն դոգով արձակեր զիս․ մի փակեր յինէն զառատութեան պարգևաց քոց դրունս․ տուր ինձ զխնդրուածս իմ զայսոսիկ․ բաց զբերանոյ իմոյ զպապանձմունս յամօթոյ անօրէնութեան․ հալածեա զզարանակալ առեւծն յորսորդութենէ կորստեան անձին իմոյ․ թէպէտ և չեմ արժանի մասին ողորմութեան և ոչ փոքու անդամ, այլ դու և զանարժանս առնոր ես թոշակել ողորմութեամբ քաղցրութեան քո ։ Կարօտ եմ շնորհաց քոց, բաղձամ խնդրել 'ի քէն զարժանի մեծութեան քո․ բայց անհամարձակութիւն անձին իմոյ ափ 'ի բերան առնէ զիս ։ Եթէ բացցես զբերան իմ, եթէ զխորհուրդս ամօթոյ ցրուեսցես յինէն, եթէ

զանձայնութիւն լեզուի իմոյ բժշ-
կեսցես, յայնժամ կալայց համար-
ձակութիւն առաջի քո. յայնժամ
զշարժել շրթանց իմոց 'ի պաղա-
տանս և յաղօթս թերեւս ոչ արգե-
լից. կեցից ողորմութեամբ ընդ
ծառայս քո և ընդ սիրելիս անուան
քո, և օժանդակութեամբ նոցա և
ձեռն կարկառելով իշխեցից մա-
տուցանել քեզ պատիւ և փառս
հանդերձ երկրպագութեամբ ընդ
Հօր քում և ընդ Հոգւոյդ սրբոյ.
այժմ և միշտ և յաւիտեանս յաւի-
տենից. ամէն:



# Է.

## Աղօթք

### ԱՌ ՀՈԳԻՆ ՍՈՒՐԲ

ԱՆԲԱՒԵԼԻ և բազմազան շնորհաց առատապէս մատակարար և բաշխիչ Հոգիդ սուրբ. Հոգի ճշմարտութեան, Հոգի ելող'ի Հօրէ, Հոգի մխիթարիչ, Աստուած ճշմարիտ, ամենայնի արարիչ ընդ Հօր և ընդ Որդւոյ, և աստուածային նախախնամութեամբ քով բերող զամենայն: Որ ըստ կամաց քոց տիրականաց բաժանես ըստ իւրաքանչիւր չափու հաւատոց, և եւս առաւել զառ 'ի քէն առատահոս շնորհաց պարգեւս, և անճառելի գթութեամբ սիրոյ քո ամենազան բարութեամբք հարստացուցեալ բարեզարդապէս ճոխացուցանես զեկեղեցի քո՝ առաքելովք, մարգա-

րէիւք , վարդապետօք , և այլովք դասուք արժանաւորեցելովք աստուածային պարգևաց քոց · յարում եղիր և զԹողուԹեան մեղաց վստահուԹիւնն , և ակարուԹեան մերոյ ընուԹեանս մարդասիրապէս ետուր զօրուԹիւն վերստին ուղղուԹեան և կենդանուԹեան 'ի մահուանէ մեղաց ։

Հայեա քաղցրուԹեամբ քով ամենագուԹ և յիս անարժան ծառայս քո , և տուր ինձ սիրտ բեկեալ և հոգի զղջման · զօրացո զլքումն մտաց իմոց · և հալածեա զանյուսուԹեան ստուեր յոգւոյ ծառայի քում · և մեծուԹեամբ ողորմուԹեան քո՝ զսաստկուԹիւն անօրէնուԹեան իմոյ՝ որ հարկանէ ցանկ զիս տանջեալ անբժշկական խղճիւ , քաւեա որպէս բարերար Աստուած · զախտն անառակուԹեան գործոց իմոց լուա ամենասուրբ և իշխան սրբուԹեան · 'ի գլորմանէ մեղաց կանգնեա , զխաւար նորա հալածեա , և զվէրս առ 'ի նմանէ զսատակողականս անձին իմոյ՝

բժշկեա․ զպատճառս չարեացն իւ-
րովք նենգութեամբքն և զամենայն
պատրանս խաբէութեան նորա մեր-
ժեա յինէն․ և զհաւանութիւն ան-
մտութեան իմոյ անտես արա և մի
յիշեր ։ Մեծապէս անօրինեալ ցա-
սուցի զկամս քաղցրութեան քո․ և
ոչ իշխեմ համարձակապէս մատու-
ցանել աղաչանս առաջի քո․ քանզի
երկնչիմ՝ յիշեալ զոր ինչ գործե-
ցի, գուցէ անարժան գոլով և լի
աղտեղութեամբք՝ դառնացուցից
միւսանգամ զամենասուրբ կամս
քո ։ Բայց նեղութիւն տարակու-
սանաց անձին իմոյ եղկելւոյ և ան-
հրաժեշտ երկեւղ վրէժխնդրու-
թեանն՝ իշխել կալ առաջի քո հար-
կեցուցանէ զիս, մանաւանդ ան-
իմանալի քաղցրութեան քո և անեզ-
րական սիրոյ վստահութիւն ։

Եւ արդ ողորմած, տես որքան
պէտս ունիմ բարերարութեան
քում․ և հայեաց քանի՜ սաստիկ են
վիշտք անձին իմոյ թշուառացելոյ․
մատիր խոնարհեա կարողդ ամենայ-
նի բժշկել զանբժշկելի հարուա-

ծոցս ծանրութիւն մեծութեան , քանզի հնարաւոր են քեզ անհնարինքս . և ոչ կարէ կալ առաջի լուսոյ քաղցրութեան քո խաւար ատելի վարուց իմոց . և տեղի տան վէրքս նեխեալ հոգւոյ իմոյ բժշկական զօրութեան քո մեծի ։ Եւ զի՞նչ իցէ բռնութիւն հակառակ զօրացեալ յընդհանրականս , որ կարիցէ կալ և տեղի ունել ընդդէմ ամենազօր հրամանի քում ։ Վասն որոյ աղաչեմ , նայեա և մի լուեր արտասուաց իմոց . ջնջեա զանօրէնութիւնս իմ , և դարձո յուրախութիւն զսուգ իմ . զմոլորեցուցիչն հալածեա յինէն , և զմոլորեալ ծառայս քո խնդրեա . ընկալ և ժողովեա 'ի փարախ հօտի քո , և ողորմութիւն 'ի քէն գտանելոյ արժանի արա ։ Որ ոչ դարձուցանես զերեսս քո յորոց խնդրենն , մի և յինէն դարձուցաներ . որ ողորմիսդ թշուառացելոց յամենայն ժամ , տուր և ինձ մասն յողորմութենէ քումմէ . որ խնայեսդ քաղցրութեամբ յորս դառնան 'ի ճանապարհաց իւրեանց չարաց ,

խնայեա և յիս. Թէպէտ և անարժան ուրեմն խնդրեմ դառնալ. որ ոչք ումեք պահես ոխս յետ հրաժարելոյ յատելեացն քեզ գործոց, լեր և առ իս անոխակալ: Մեծապարգեւդ՝ տուր ինձ սակաւիկ. և յամենայնի տուաատգ մի զըկեր զիս յողորմութենէ քումմէ. քաղցրահայեացդ առ որս 'ի քէն գոյացան, և զիս զձեռաց քոց գործ մի անտես առներ. զի ընդ ամենեսեան ոյք սիրեն զքեզ և ես արժանի եղէց սիրել և պահել զպատուիրանս զուգապէս նոցա 'ի փրկութիւն անձին իմոյ, և փառաւորել ընդ նոսին ըզքեզ՝ ուղիղ և ճշմարիտ խոստովանութեամբ ընդ Հօր և ընդ Որդւոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:



## Ը.

# Աղօթք

### ԱՌ ՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ

ՈՎ ԲՆՈՒԹԻՒՆ անճառելի և արարչականից համագոյ և միասնական սուրբ Երրորդութիւն. յորոյ դաւանութենէ ոչ երբէք երկմտեցի. զոր սիրեցի և պաշտեմ 'ի մանկութենէ; որոյ լոյս փրկութեան ցանկ ուրախ զիս առնէ. որոյ յիշատակաւ մխիթարիմ հանապազ 'ի հեղձուցիչ և 'ի խաւարական տրտմութենէս: Այս արա ծառայի քում առ 'ի չտալ նենգաւորին պարծել յաղթութեամբ 'ի վերայ իմ. լեր ինձ զօրութիւն, մանաւանդ եթէ պատերազմեաց վասն իմ ընդ դառն և խիստ ախոյանին. զի տկար է զօրութիւն մտաց և մարմնոց իմոց կալ ընդդէմ չարախոհութեան Նորա. սակայն քեւ

մատուցեալ իմ տկարանայ վի-
շտայն, և կորանայ ամօթով. իսկ ես
յաղագս քո եղէց բարձրագլուխ և
լցեալ բերկրութեամբ. զի չէք հնար
զքեզ կրողաց և յանուն քո խրա-
խուսելոց ուղիղ մտօք՝ եթէ ոչ յաղ-
թեսցեն նմա. որպէս զի զայս կա-
տարեալ և կնքեալ՝ ծառայ քո ըստ
ճշմարտութեան արժանի եղէց կո-
չիլ: Եւ բերան իմ լցցի գոհու-
թեամբ յօրհնել զփառս քո Հայր
Ճշմարիտ Որդւոյ քո միածնի, և Բանի
Հօր մարմնացեալ փրկիչ և Աս-
տուած 'ի վերայ ամենայն երկրի.
և Հոգւի սուրբ Աստուծոյ հաղորդ-
յամենայն մեծութիւնս և 'ի գործս
Հօր և Որդւոյ, նոյն գոլով ըստ
բնութեան որպէս յԱստուծոյ Աս-
տուած Ճշմարիտ. այժմ և միշտ և
յաւիտեանս յաւիտենից:



# Թ.

## Աղօթք

### ԱՌ ԱՄԵՆԱՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ

Առ քեզ տէր՝ մի և միայն՝ ապաւինեալ աղաչեմ, որ անփոփոխելիդ ես յէութեան, Երրորդութիւն անքակ և կատարեալ, բնութիւն անհասական, անտես յեղականաց՝ բանաւորաց և իմաստնոց · յորմէ առ ին սկիզբն գոյացութեան ամենայն բնութիւնք աննիւթից և նիւթականաց, և կատարեալ հաստատեցան 'ի փառս և 'ի ծանօթութիւն անքննելի աստուածութեանդ, այլ ոչ՝ 'ի լրումն ինչ պիտոյից բաւականիդ : Մի մերժեր յերեսաց քոց զծառայս քո · և մի անտես առներ՝ վասն որոյ համարձակեալ եմ կարդալ առ քեզ · որ նախ քան զխնդրելն շնորհես զպարգևս քո · և յառաջ քան զհայցելն

դատանիս՝ որոց մատչինն առ քեզ սփրով. զի ոչ յերեսս, այլ 'ի խորհուրդս հայիս ծածուկս: Արդ տես տէր զտառապանս սրտի իմոյ, և ըղխռովութիւն խորհրդոց իմոց վասն մեղաց՝ խաղաղացո սուրբ շնորհիւքո: Ելին վերացան անօրէնութիւնք իմ մինչեւ յերկինս. ըստ բազում գթութեան քում տէր ջնջեա զնոսա. զհիւանդութիւնս իմ բժըշկեա. ողջացո զապականութիւն վիրաց իմոց, զոր կրեցի 'ի մարդասպան աւազակէն. Թէպէտ և ախորժելով կամաց մատնեցի նմա զիս ինքն, սակայն դու տէր յափշտակեա զիս 'ի նմանէ: Որ կորզեսդ 'ի միջոյ ժանեաց՝ և 'ի խորոց անդնդոց դարձուցանես, փշրելով զգլուխ վիշապին՝ կորզեա և զիս. վասն զի եկեր զիս և եկուլ զիս վիշապն ահագին, մանրամասն կոտորեաց զիս, և ելից յինէն զկուշտ իւր: Որ առնեսդ իրաւունս զրկելոց դատաւոր մարդասէր՝ և լնուս մեծամեծ բարութեամբ զկարօտս, հայեաց յաղքատութիւնս իմ, զի անանկացայ և կորեայ.

ոչ ունիմ իրաւունս և համարձա-
կութիւն խնդրուածոց, այլ մատու-
ցանեմ աղերս որպէս յանցաւոր․
զի գիտեմ զկամաց քոց քաղցրու-
թիւն․ լուր տէր և անսա այժմ ա-
ռաջի քո խոստովանութեանս, և մի
պահանջեր զհամար պարտեաց
իմոց։

Խոտորեցայ 'ի քէն, մի երթար և
դու խոտորնակս․ անօրինեցայ, մի
հատուցաներ ինձ զկշիռն․ մոռացայ
զառ 'ի քէն տուեալ պատուիրանսն,
մի ոսոխապէս մտաներ 'ի դատաս-
տան ընդ ծառայի քո։ Զոր աւան-
դեցեր ինձ՝ վատնեցի զգանձն, և
այժմ եմ աղքատ և չքաւոր, քաղ-
ցեալ և ծարաւի, բոկ և մերկ, և ան-
նշան ամենեւին․ և ոչ ոք է որ լնու
զայսքան պակասութիւն թշուառա-
ցելոյս․ այլ և կրկին նեղութեամբ
տառապեցուցանեն զիս քաղաքացիք
աշխարհիս այսորիկ՝ յանարժան
վաստակս կեղեքելով զեղկելի կեանս,
և ոչ տան ինձ գտանել սակաւ մի հան-
գիստ․ վասն որոյ յանսահման գը-
թութիւն քո վստահանալով, հայր,

փախուցեալ յայսքան կրից տառա-
պանաց՝ դիմեցի առ քեզ։ Արդ մի
եղէց վրիպեալ յակնկալութենէ
քումմէ՝ միայն գթած և անչարա-
յուշ. Թէպէտ զորդիութեանն կո-
րուսի զցանկալի անուն, այլ 'ի տե-
րութենէ քումմէ մի եղէց զրկեալ.
զի որ ոք գայցէ առ քեզ՝ ոչ եղիցի
արտաքսեալ, այլ վայելեսցէ 'ի
խնամս քո։

Զաղքատութիւն իմ ճոխացո,
Թէպէտ և ոչ ըստ արժանւոյն. կե-
րակրեա զանձն իմ սովամահ, գէթ
'ի փշրանաց ամենառատ սեղանոյ
քո. զովացո զպապակումն շրթանց
իմոց՝ միայն ծայրիւ մատին. զխառ-
նելեացն զառատ արբուսմն, և զսուրբ
զենլեացն ամենաշնորհ կերակուր՝
լքի անզգամութեամբ. սակայն 'ի
չափաւորէ անտի մի եղէց զրկեալ։
Տուր յոտս իմ կօշիկս, զի մի դար-
ձեալ յօձէ անտի խածեալ անկայց
և իսպառ կորեայց. զմերկութիւնս
իմ զգեցո, Թէպէտ և ոչ արժանւոյն
զգեստու. զի Թէ իցէ իսկ մաշկե-
ղէն, սակայն 'ի քէն կազմեալ. որ-

պէս զի մի եղէց մխասանդամ ցրտա-
կեղ և խորշակահար՝ 'ի կրկին և հա-
կառակ զայս ունող բանսարկուէն ։
Դիր 'ի ձեռս իմ զնշան մատանւոյ ․
զի մի թուեցայց ոչ գոլ քո, և վասն
այնորիկ դարձեալ վիրաւորեցայց ․
այլ 'ի սուրբ կնքոյ քումմէ զարհու-
րեալ իւրովքն սատամբակն չար՝ փա-
խիցէ, և ապրեցայց ես ։ Արդ բա-
ւականդ ամենայն բարութեանց առ-
ամենեսին՝ զունայնացեալս յայս-
քան բարութեանց լցո յաննուազ
փարթամութենէ քումմէ ․ և զերծո
զիս 'ի տառապեցուցչաց իմոց ․ և արա
վաստակել 'ի սուրբ այգւոջ քում
առանց դանդաղանաց, թէպէտ և
տարաժամ ․ զի թերեւս 'ի ձեռանէ
քումմէ ընդունել զշնորհս ընդ վեր-
ջինս արժանի եղէց, և մատուցա-
նել ընդ նոսին գոհութիւն և փառս
սրբոյ և անզուգական համապատիւ
Երրորդութեանդ ․ այժմ և միշտ և
յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

## Ժ.

# Աղօթք

### ԱՌ ՈՐԴԻՆ

ՈՐԴԻ և բան Հօր՝ Աստուած ճշմարիտ, որ եղեր մարդ կատարեալ, և հաճեցար չարչարանս յանձն առնուլ, զի զչարչարեալս 'ի մեղաց զազգս մարդկան զերծուսցես 'ի չարչարանաց անտի. և մեռար մարմնով վասն խափանելոյ զմահ. չեմ արժանի կարդալ զանուն քո, բայց վասն անճառելի սիրոյ քո մեծութեան՝ որ խոնարհեցոյց զքեզ յայս ամենայն, վստահանամ աղաչել զհեզութիւն քո: Լուր ինձ վասն չարչարանաց քոց, և ընկալ զխոստովանութիւն սրտի և շրթանց իմոց, զոր մատուցանեմ առաջի քո այսօր. և շնորհեա ինձ ազատութիւն 'ի ծառայութենէ մեղաց, և

քաւութիւն գործոյն անօրէնութեան ։

Ցուունք մեղաց պատեցան զինեւ 'ի մանկութենէ իմմէ, և որսացան զիս անօրէնութիւնք, և կամ շաղեալ անարձակ կապովք. և հնար լուծման՝ բայց 'ի քէն՝ չիք ուրեք գտանել ինձ ։ Խոնարհեաց 'ի փըրկութիւն անպիտան ծառայի քո. քակեա զշարաշար հիւսմունս մանուածոյ կապանաց իմոց, և լոյծ զվարակեալ 'ի գժնդակ տանջանաց զանձն իմ. հան 'ի ստուերաց մահու զկեանս իմ. որ զՂազար 'ի բարբառ ձայնի աստուածութեան քո ածեր արտաքս 'ի ստորին վայրաց երկրի և մահու ։ Վասն զի կարես միշտ զանկարելիս, և հզօր ես 'ի վերայ բնութեան. և չիք դիմադարձութիւն քեզ 'ի հակառակութենէ ուստեք ։ Գթա 'ի կորստական անձին իմոյ տառապանս. և տես զնեղութիւն սովորութեան չարին բնակելոյ յիս, որ ձգէ օր ըստ օրէ ըզտկարութիւն հոգւոյ իմոյ յալս խաւարի, և 'ի մահ մշտնջենական.

և տուր զկենդանի և զաներեւոյթ բարբառ քո 'ի յարութիւն կենդանութեան . կապեա զհզօրն , և արձակեա զակար անձն իմ ։ Փախիցէ չար սովորութիւնն 'ի ծագմանէ քումմէ , և խաւարն քայքայեալ ցրուեսցի յիմանալի ճառագայթից քոց . և եղիցի վերին՝ ստորինս , և որ մեռայս կենդանացայց քեւ ։ Զնեխութիւն վիրաց իմոց բժշկեա տէր . զլուծումն անդամոց հոգւոյ իմոյ հաստատեա . զկուրութիւն մտաց իմոց լուսաւորեա . զորս կոչեցի առ իս՝ յետ առաջնոյ հրամանաւ քով մաքրութեան՝ յաղագս առչարն յարգարման և պատրաստութեան , զեօթանեսին , այլ և զկեգէոնս այսոցն , միւսանգամ սաստիւ ձայնի քո հալածեա . և դարձո 'ի զգայութիւն զափշութիւն մտաց իմոց ։ Ցիմարեցայ՝ հետեւելով անզգամին ուսմանս . իմաստութեան անչափելիդ ծով իմաստնացո զիս ։ Անզգուշութեամբ իմով և մոլորապէս յածմամբք գաղանակուր եղէ . հովիւդ մեծ և ամենաքաջ , հնարեա

ցիս ինձ փրկութիւն դարձեալ, և արասցես արտասուակից ճարակաւորաց քոց զիս ։

Եւ զխնդրդ կարացից բանիւք մի ըստ միոջէ զանհուն յինէն գործեցելոց այլանդակաց չարեաց պատմել զբազմութիւնս ։ Միայն զքեզ զգթառատդ ամենայնի անկեալ յերկիր աղաչեմ, թողութիւն շնորհեա և քաւիչ լեր · և տուր ինձ զմնացորդս աւաղելի կենաց իմոց 'ի հաճոյս քեզ անցուցանել, և գնալ ըստ պատուիրանաց քոց ամենայն կարգաւորութեամբ վարուց քրիստոնէութեան՝ առանց յետս դառնալոյ յամենագժնեայ սովորութիւնն · և պարգեւեա ինձ աղբերս արտասուաց · որպէս զի ողորմութեամբ քով 'ի ձեռն այնր աւազանի երկրորդի լուասցին և ջնջեսցին սոսկալի աղտեղութիւնք մեղաց իմոց · և արժանի եղէց կալ համարձակութեամբ առաջի աթոռոյ շնորհաց քոց · և կանխել 'ի գթութեան քո հայցմունս առանց հեղգութեան և դանդաղանաց · և գտանել 'ի քէն

զվայելչականն աստուածութեան քո առատաշնորհ բարերարու-թիւնս. և քեզ մատուցանել երկրպագութիւն և պատիւ ուղղակի փառաւորութեամբ և խոստովանու-թեամբ ընդ Հօր և ընդ Հոգւոյդ սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:



# ԺԱ.

## Աղօթք

### ԱՌ ՈՐԴԻՆ

Ի ԼՈՒՍՈՅ ճշմարտէ համագոյակ լոյս, յԱստուծոյ Աստուած, 'ի կենաց կեանք, բան Հօր և Որդի միածին. անժամանակ, անեղանելի, արարիչ ամենայնի. որ հաճեցար լինել որդի մարդոյ, և արարիչդ՝ արարած՝ մարմնով. բանդ՝ մարմին. աներեւդ՝ երեւալ. անմահդ՝ մահկանացու. փոքր՝ մեծդ, և ձոխդ՝ աղքատ. որ 'ի սկզբանէ ընդ Հօր և միշտ էակ՝ մանուկ 'ի կուսէն, իմոյս լեր կատարիչ մանկութեան: Քանզի դու և ամենայն ըստ ինքեանց անկատարից ես լրական զօրութեամբ քով. և արարիչ որոց 'ի ըղդայութեան, և իմանալեաց ամենեցունց: Իմաստութիւնդ Հօր, տուր

ինձ անուանակիր լինել՝ ճշմարիտ իմաստութեամբ քով և հրամայեա իմաստնանալ ինձ. և անճառելիդ կատարելութիւն կատարեա զիս հոգւով։ Նորոգեսցի որպէս արծուոյ զօրութիւն մանկութեան իմոյ, վասն լինելոյ քո մարդ նոր։ Մի տար կռուել ընդ հնութեան կերպարանին, և նմանութեան՝ զառիթ հնոյն մարդոյ. և եթէ ընկալայ երբէք, զերծ 'ի բաց՝ որպէս զքուրձն սգոյ յամենայն ազգէ մարդկան. դաստիարակեա զխամութիւն մտաց իմոց, ուսո ինձ գնալ 'ի հրամանս քո. և մի տար թողուլ սխալոտ և դիւրայանց հասակիս այսորիկ՝ տղայօրէն բարուք՝ ստահակութեամբ գընալ. այլ ըստ աստուածային հեղութեան քո և ըստ մեծի և անհասանելի գթութեան՝ յարամերձ առ իս կացցեն շնորհաց քոց պահպանիչ զգուշութիւնք 'ի փրկութիւն կենդանութեան ծառայի քո։ Եւ հաճոյութեամբ քաղցր սիրոյ կամաց քոց՝ եղէց հանդարտեալ 'ի բնաւորականաց ընդդիմութեանց հոգւոյ

մարդկաց. այլ և հմուտ առ պատերազմն՝ քոյով նախախնամութեամբ, և անհերքելի ամենայաղթ զօրութեամբ անվէր, առանց լքման 'ի ձեռանէ քումմէ՝ կալով մնալով։

Լեր ընդ իս տէր իմ 'ի ննջել և 'ի յառնել, 'ի նստել 'ի տան և գնալ 'ի ճանապարհի. և շնորհեա ինձ զամենայն զգործս իմ 'ի փառս քո և 'ի հաճութիւն քեզ կատարել։ Խօսք իմ օրէնք քո եղիցին, և հոգի իմ 'ի պատուիրանս քո խոկասցէ. և փոխանակ ամենայն զբօսանաց մանկականաց միայն սէր քո բորբոքեսցի յոգի իմ։ Պարգեւեա ինձ և արտօսր առատապէս. զի արժանի եղէց կալ առաջի քո որպէս մաղթող կատարեալ, և լուանալ զաղտեղութիւն մտաց իմոց. և զոր ինչ յանցեայ գործովք 'ի մոռացմանէ պատուիրանաց և երկեւղի քո ահաւորի և սրբոյ, և եղէց մաքուր և զատեալ յամենայն աղմոյ մեղաց աղտեղութեան, որպէս զմի 'ի ծառայից քոց. շնորհեա ինձ Աստուած իմ Յիսուս արժանի լինել մատուցման

փառաւորանութեան վայելչականի, և օրհնել արժանապէս զմեծութիւն տէրութեան քո ընդ Հօր և ընդ Հոգւոյդ սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:



# ԺԲ.

## Աղօթք

### ԱՌ ՈՐԴԻՆ

ՃՇՄԱՐԻՏ լոյս, ծնունդ լուսոյ ճշմարտի, և ամենայնիւ հաւասար ըստ բնութեան պատճառին և ծնողին քում՝ Յիսուս Քրիստոս. որ եղեր մարդ վասն մեր ճշմարտապէս, և չարչարեցար անչարչարականդ լոյս՝ վասն 'ի չարչարանաց մեղաց ազատելոյ զմեզ: Լուսաւորեա զտգիտութեամբ և զմեղօք խաւարեալ միտս իմ, և կակղացո զխստութիւն սրտի իմոյ. լինել իմաստուն ինձ 'ի բարիս և անմեղ յամենայն չարութիւնս. և ընդունել զղջմամբ և արտասուօք զկեցուցիչ հրամանս քո. գործել յայսմ հետէ զգործ արդարութեան՝ յորմէ հեռացայ մեղօք, և լուանալ զտիղմ ժանտու-

թեան չարեացն , զոր կամակար մտօք և ձախողակի ախորժակօք մածուցեալ յարեցի յիս և միացուցի ։ Քանզի քեզ ամենայն ինչ 'ի բարեաց հնարաւոր է , և դիւրին գալ 'ի ներգործութիւն յոգիս մեր ։ Որ եկիր կոչել ոչ զարդարս , այլ զմեղաւորս . և խոստացար զտաժանումն աշխատութեանցն 'ի ծանրաբեռնութենէ մեղաց՝ լուծանել . և հրամայեցեր առնուլ փոխանակ չարաբեռնութեանցն զբարւոք և զհանգըստաւէտ բեռն և լուծ պատուիրանաց քոց ։ Տուր զօրութիւն ծառայի քո՝ կրել ըստ կամաց քոց ըզսուրբ և զքաղցր բեռս զայս որ 'ի հեզութենէ քումմէ տուաւ մեզ ։

Բժշկեա զլուծումն տկարութեան մեղացն որ յիս , փոփոխեա զչարասէր կամս մտաց իմոց . կարողացո 'ի գործս առաքինութեանց յոր սահմանեցեր՝ զանպիտան ծառայս քո , և դիր յոգւոջ իմում ըզբոց սիրոյ պատուիրանաց քոց ։ Որ ոչ կամիս զմահ մեղաւորի , այլ ըզդարձ նորա 'ի չար ճանապարհէն և

զկեալ, նա և յարուցանես հզօրապէս զմեղօքն մեռեալս. կարկառ զկենդանագործական ձեռն քո մարդասէր, և տուր յառնել ինձ 'ի մահուանէ անտի, թէպէտ և ես ոչ կամիցիմ։ Բանադատիմ 'ի չար և յանօրէն սովորութեանց անտի հնացելոց, և ընտաբար հաստատելոց յիս. այլ տկար է այն ամենայն առաջի կամաց քոց և հրամանաց։ Սաստեա 'ի խաբեբայն և 'ի պատրանս նորա. հեռացո մերժեա յինէն զնա, և որ նորա իցեն, եթէ գործք և եթէ բանք, եթէ զեռմունք խորհրդոց. Թագաւորեսցէ յիս զօրութիւն և կամք քո. և իշխանութիւն չարին ինքնահալած լիցի. մի տար զագանին տէր զքո գտեալ 'ի մոլորութենէ և 'ի կորստենէ զոչխարն. և մի աւազակեսցէ միւսանգամ սատանիչն՝ զպարգեւեալ քո փարթամութիւնն յառաջագոյն կողոպտելոց. և մի դարձեալ վիրաւորեսցէ և կամ սպանցէ, զոր բժշկեցեր դու և յարուցեր 'ի մեռելոց, կամ իշխեսցէ պահել 'ի նմին մահու զարեան քո

պատուականի զգլխինս : Հայեաց և լուր տէր զաղաչանս յանցաւոր ծառայի քո, և մի անտես առներ զիս վասն բազմութեան մեղաց իմոց. այլ ընկալ զիս, թէպէտ և փախուցեալ սրացայ 'ի բաց անմտաբար յուրախացուցիչ կամաց քոց, և զամենահեզ քաղցրութիւն քո դառնացուցի 'ի վերայ իմ, և մի յիշեր ըզմեղս իմ զառաջինս. այլ վաղվաղեսցես ընդ առաջ մոլորեալ ծառայի քո, և 'ի գիւտ և 'ի փրկութիւն, քաւութիւն տալ ամենայն մեղաց իմոց. որպէս զի և ես արժանի եղէց ընդ ամենայն ծառայս քո փառաւորել զքեզ ընդ Հօր և սուրբ Հոգւոյդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն :



## ԺԳ.

# Աղօթք

### Ի ԴԷՄՍ ՈՐԴԻՈՑ

ԶՕՐՈՒԹԻՒՆ և իմաստութիւն Հօր՝ Յիսուս Քրիստոս, որ առաքեցար յաթոռոյ փառաց աստուածութեան քո, և եղեր 'ի նմանութիւն մարմնոյ մեղաց և վասն մեղաց. զի դատապարտեսցի զօրութիւն մեղաց 'ի ձեռն մարմնոյ քո, և տկար բնութիւնս այս ընկալցի կարողութիւն ընդդիմակացութեան ախտից և չարութեան. զի եղիցուք ժողովուրդ սեփական մեծի տէրութեան քում, զերծեալք 'ի ծառայութենէ չարին: Զօրացո և զիմոյ լուծութեանս մեղկութիւն 'ի ձեռն անյաղթ և քաջապինդ քոյոյդ զօրութեան. զի կարասցից ապրել 'ի հինահարութենէ ստամբակ թշնամ-

ւոյն , և վանել զնոյն մտրտակցու-
թեամբ քով ։ Բժշկեա և զառաջին
հարուածս անձին իմոյ , որ 'ի մուխ
նետից չարին , դնելով սպեղանիս
քաղցրութեան քո . ծածկեա զիս
ընդ հովանեաւ թեւոց քոց , զի մի
դարձեալ խոցոտեսցէ զիս թշնամին
անմարմին և դժուարամարտ ։ Վասն
զի բազում անգամ արար զիս նե-
տալից իբրև զնպատակ . և տեղա-
ցին յիս նետք հինից նորա , և յան-
խնայ խոցոտեցին զիս ։ Արդ փո-
խանակ այնր ամաչեսցէ անսանե-
լով զիս բժշկեալ առ 'ի քէն տէր ,
և ամրացեալ շուրջանակի իբրև
պարսպաւ հրեղինաւ . որպէս ա-
րարն՝ եղիցի նմա , և 'ի գլուխ նորա
հատուսցի հատուցումն նորա ։ Խա-
ւարեսցին աչք նորա առ 'ի չհայել ,
և կորասցի նա ընդ հզօր ձեռամբ
քով . իսկ ես լցայց ուժով պնդու-
թեան քո . զէնք բռնութեան նորա
կոտորտեսցին , և մեքենայք նորա
տկարասցին . եղիցի նա մերկ և խայ-
տառակեալ 'ի ձեռն խաչի քո , և ի-
մացմունք նենգութեան նորա ըն-

դունայնասցին . և ծառայ քո վայե-
լեալ՚ի շնորհս քո առատապէս՝ ընդ
արժանաւորս քո հատուսցէ քեզ
փառս և օրհնութիւն շրթամբք ցըն-
ծութեամբ , այժմ և միշտ և յաւի-
տեանս յաւիտենից . ամէն ։



# ԺԳ.

## Աղօթք

### ԱՌ ՈՐԴԻՆ

Որ աղբիւրդ ես անսպառ բարութեանց, և շտեմարան ամենայն գանձուց իմաստութեան՝ տէր բարերար, տուր ինձ ճաշակել 'ի գիտութենէ քումմէ, և արբո ինձ ծարաւոյս 'ի Ջրոյ անտի խաղացելոյ 'ի կեանսդ յաւիտենից: Վասն զի 'ի բարձրութենէ արդարութեան խոնարհեցայ և ափշեցայ, և վասն այնորիկ հաւասար եղէ անասնոց անբանից. և դու տէր յայտնեցար սիրով, զի արասցես իմաստունս՝ զանմիտս, նա և փառաւորս՝ զանարգս, զտկարս՝ զօրաւորս, և մեծապատիւս՝ զանտոհմս. զորս մանաւանդ սիրեցեր և ճոխացուցեր աղքատու-

թեամբ քով, զի երբեւեսցին առա-
տութիւնք շնորհաց քոց, և գութք ընտանութեան ազգակցութեան հաստչիդ առ արարածս ։ Ի պատ-
ճառս որոյ եղեր մարդ՝ Բանդ Աս-
տուած, և հետեւեսցար բնաւոր կրից մարդկայնոց՝ առանց մեղաց. քաղ-
ցեար և ծարաւեցար, զի լցուսցես բարութեամբ. աշխատեցար, զի զաշխատեալս մեղօք հանգուսցես. բանսարկեցար, զի զերծուսցես ըզ-
մեզ 'ի մեղաց բանսարկութենէ. անշքեցար, անարգեցար. եղեր պանդուխտ, օտար, անյարկ, և ընդ-
հարկաւ ծառայից. ոչ գանգատե-
ցար և զծանրագոյնսն քան զայսո-
սիկ առնուլ յանձն վասն մարդկան 'ի մարդկանէ. որպէս զի և ազա-
տեսցին 'ի յինքեանց ինքեանք, ըստ որում և յօտարին չարութենէ. մատնեցար, գանալից եղեր, այպա-
նեցար բազմադիմի ձաղանացն տե-
սակաւ. մինչեւ 'ի մահ խաչի գալ ընդ աւազակս, և դառնութեանն ճաշակօք քաղցրացուցանել զմերն, և մահուամբ լուծանել զթշնամին

յետին . իսկ իջանելով 'ի ստորին տեղին , եղեւ առաջին պտուղ ննջեցելոց , և զամենեսեան ազատեցեր 'ի նմանէ յուսով :

Արդ որ զայս ամենայն յօժարախորժ կամօք կրեցեր 'ի քեզ վասն մարդկան՝ Աստուած իմ Յիսուս , մի անտես առներ և զիս զանձկացեալս 'ի քեզ , այլ տուր ինձ մասն բարի՝ կացելոյս առաջի աթոռոյ շնորհաց քոց . 'ի ժամանակի ընդունելութեան մատեայ առ քեզ . յաւուր փրկութեան օգնեա ինձ . խզեա յինէն այժմ զտոռունս մեղաց , զի մի նոքումբք վարակեալ եկից կապեալ 'ի խաւարն արտաքին . այժմ արա ինձ լուանալ ապաշխարութեամբ զաղտ հնութեան մեղացն . զի յայնժամ քաղցրութեամբ հայեսցիս յիս , և օրհնութեամբ կոչեսցես առ քեզ . որ ողջ կամիս զմահ մեղաւորի , այլ զդառնալ նորա 'ի չար ճանապարհէն և զկեալ , կեցո և զիս՝ դարձուցանելով 'ի չար և 'ի բազմաթիւր իմոց ընթացից : Եկ առ իս ընդաբոյս հե-

զութեամբ քով, և դարձո զիս 'ի մոլորութենէ որպէս զոչխարն զայն · հովուեա և ինձ 'ի ճանապարհս արդարութեան քո, ջամբելով յանուշահոտ շուշանացն քոց անպակասաբար, սնուցանողականօքն ջուրքք հանգո զաշխատեալ մեղօք զանձն իմ, և զետեղեա զմոլորական խորհուրդս իմ 'ի վայրի դալարուոջ ։ Զգայլն յափշտակող՝ որ կեղեքեացն զիս բազում անգամ, հալածեա տէր անմերձ հեռաւորութեամբ · բժշկեա և զխածուածս գազանին որ յիս, ամենիմաստ բժիշկ · որ ըղբոլոր անդամոցն հաստատես զլուծումն զկենդանի մեռելոցն, և ըղբնաւ իսկ մեռեալս կանգնես · կուրաց շնորհես լոյս, և խլից լսումն ձայնի · համրոց բանաս զբերանս, և զձեռս գօսս պարզես · վազեն կաղք իբրև զեղջերուս՝ 'ի քէն ընկալեալ զօրութիւն · և կորացեալքն թիկամբք՝ վերականեն 'ի բարձունս ։ Որ զծածուկ վէրս հանգերձ յայտնեօք բժշկես՝ կաշառօք միայն հաւատոյ, և ողջոցն չկամիս զխօթու-

թիւն ․ և յիս՝ որ 'ի բոլորս յայտնիկ տխտա կամ ծիւրեալ և աշխատեալ՝ մեծապէս զթա փրկիչ, և լեր ձեռնտու՝ յարուցանելով զգիակն թշուառական հոգւոյ իմոյ ․ վասն զի դիւրին է քեզ ամենայն՝ զոր կամիս ։ Եւ եթէ խեղութիւնք և վէրք մարմնոյ փոյթ են քեզ, ընդէր անտես առնես զախտացեալս հոգւով. զի ոչ եթէ զմարմինս եկիր բժշկել, այլ զհոգիս ․ և եթէ բժշկես՝ վասն որոյ չեկիրն, մի լուեր վասն որոյ եկիրն ․ եթէ յապականացու բնութիւն գթաս, զբնութիւն անապական մի անտես առներ՝ խնդրողաց զքեզ․ եթէ զանընտանեին քեզ օտրես, մի մերժեր և զոր կոչեցեր քո պատկեր՝ զյանգակից և զնմանագոյն քեզ էութիւն ․ յոր մանաւանդ բնակես՝ և առնես քեզ տաճար ։ Վասն զի մարմին զքեզ տանել ոչ զօրէ մարմնացեալդ Աստուած ․ իսկ յորժամ կամիս՝ բնակես յոգիս սիրելեաց քոց ․ մանաւանդ որք մաքրութեանն վարուք զինքեանս արժանացուցին քեզ ։ Մաքրեա և զիս յաղտոյ մե-

ղաց, և արա արժանի ընդունել ըղ-
քեզ • մի համարիր ժանդ զանպի-
տան ծառայ քո • զի ոչ եկիր կոչել
զարդարս, այլ զմեղաւորս յապաշ-
խարութիւն, և ոչ է պիտոյ բժիշկ
ողջոց, այլ հիւանդաց • զորս կոչե-
լով առ քեզ՝ հանգուցանել խոս-
տացար յաշխատութենէ մեղաց •
եդիր առաջի զյոյս անչափ բարու-
թեանց քոց ։ Զի և գտանելն միայն
զքեզ՝ մարգարիտ մեծագին, բովան-
դակ բարութիւն է • և անկապուտ
փարթամութիւն ստանալն զքեզ
փոխանակ ամենայնի ։ Արդ լուր տէր
և անսա, և զվարատեալս անօրէնու-
թեամբ ժողովեա առ քեզ • ձգեա
զձեռն քո և փրկեա զիս՚ի ծփանաց
մեղաց, և ՚ի խորոց անդնդոց ուստի
ոչ է ինձ հանգիստ • վասն զի յոր-
ձանք անհնարինք պաշարեցին զիս,
և համարեցայ անկեալ յերեսաց
քոց • այլ որ ապաւէնդ ես վշտացե-
լոց, և ակնածու որոց ՚ի տարակու-
սանս, փութա յօգնութիւն վտան-
գելոյս, և արա անդորրութիւն նե-
ղութեանց իմոց • զի և ես ընդ փըր-

կեալսն գոհացայց զքեն տէր, և մատուցից քեզ փառս և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:



## ԺԵ·

# Աղօթք

## ԱՌ ՈՐԴԻՆ

ԾԱԳՈՒՄՆ փառաց Հօր, և կեր-պարան էութեան նորա, կազմիչ և յօրինիչ ամենայն յաւիտենից, և Նախախնամող բոլորեցունց Յիսուս Քրիստոս. որ ստեղծեր զմարդն 'ի կերպարանս անզուգական աս-տուածութեան քո, և անպատում փառօք պատուեալ՝ մեծարեցեր զնա իբրև զպատկերակից քո. զփափ-կութիւն առ 'ի քէն տնկեցելոյ դրախտին շնորհեցեր նմա. և անմա-հական կենացն ետուր նմա իշխա-նութիւն՝ եթէ կամեսցի. տիրական անուամբ և ձեռով միայն զնա ճո-խացուցեր, և զամենայն ինչ հնա-զանդ արարեր 'ի ներքոյ ոտից նորա, կացուցանելով զնա 'ի վերայ ձեռա-

կերտաց քոց ։ Ետուր նմա օրէնս 'ի յայտնութիւն ազատութեան անձին նորա՝ իբրեւ մտաւորի եւ բանաւորի , կամեցեալ փորձել սակաւինչ ժամանակ զինքնիշխանութիւն վարուց նորա . որպէս զի յետ այնորիկ ընկալցի զառաւելութիւն պատւոյ՝ մի իբրեւ շնորհ ըստ առաջնումն , այլ որպէս հատուցումն առաքինութեան . զի կամիս զգովեստ ծառայից քոց յամենեցունց եւ զվըկայութիւն քաջութեան , 'ի ձեռն որոյ ըմբերանի հակառակասէր եւ ընդդիմացող բանսարկուն ։ Իսկ 'ի չանսալ նորա կեցուցիչ հրամանաց քոց , եւ յանսաստել անցանել քան զչափ բնութեան իւրոյ , կորոյս զամենայն վայելչութիւնն . ուստի եւ 'ի բաց կացեալ յարդարութենէ եւ յանեղծութենէ՝ եղեւ ընդունակ ախտից եւ ապականութեան . եւ զըրկեցաւ ոչ միայն 'ի վստահացելոցն բարութեանց , այլ եւ 'ի մերձակայիցն . զի կարծիք անչափութեան գիտեն մըխպեցուցանել եւ 'ի չափաւորէն . եւ ընթացք առ անբնականն

զբնութեանն իւր եղծանեն ։ Արդ 'ի լինել մարդոյն մահկանացու վասն մեղաց , և չյանցուցեալքն եւս անկան ընդ նովին կրիւք . սակայն դու տէր և յետ այնորիկ ոչ իսպառ տանջեցեր զնոսա իբրեւ զթշնամիս , այլ բազմադիմի տեսակաւ ողորմութեան 'ի ձեռն խրատու կամեցար ձգել առ քեզ . խօսեցար ընդ նոսա օրինօք և մարգարէիւք . և ոչ այնպէս կամեցան ճանաչել զքեզ ։

Իսկ 'ի վերայ այսր ամենայնի զառաւելութիւն շնորհաց քոց կամեցեալ ցուցանել , իբրեւ զմարդասէր խոնարհեցար 'ի պատուակցութենէ Հօր՝ լինել 'ի կերպարանս ծառայի . որպէս զի եղիցուք մեք ազատք 'ի մեղաց և 'ի մահուանէ . զմահ խաչի առեր յանձն կամաւ , և զվճիռ դատապարտութեան մերոյ բեւեռեցեր ընդ խաչափայտին . զբռնութիւն սատանայի լուծեր 'ի ձեռն չարչարանաց քոց . իսկ ըզմահ և զապականութիւն՝ 'ի ձեռն մահու և թաղման քո . և յարութեամբ քով կորզեցեր զամենե-

սեան յորովայնէ գժոխոց․ զպատիւ փառաց քոց պարգեւեցեր մեզ՝ մերովս բնութեամբ նստելով ընդ աջմէ Հօր։ Ետուր մեզ գրաւական սիրոյ զզանազանութիւն շնորհաց Հոգւոյդ սրբոյ․ և այսպէս հաւատարմացուցեալ զխոստումն անճառելի բարութեանց քոց՝ հաստատեցեր զմեզ յուսով զի զառժամայն կենացն այսոցիկ լքցուք զցանկալիս, և սիրեսցուք միայն ըզքեզ զարժանաւորդ սիրոյ։

Սակայն և ոչ այս ամենայն բարերարութիւն կարացին ժողովել ըզմիտս մեր առ քեզ, կամ հաւանեցուցանել զխոստութիւն բարուց մերոց․ այլ ամեհի խորհրդովք եղաք արտաքս 'ի սահմանեալ ճանապարհաց քոց, ոչ յիշելով ամենեւին զառատութիւն սիրոյ քո, և զպատուէրս հրամանաց քոց․ և ոչ այսչափ միայն, այլ և փոխանակ բարւոյ եղաք չարք, և հատուցաք ատելութիւն փոխանակ սիրոյ, և ապաշնորհութիւն փոխանակ շնորհաց։ Բայց ոչ ոք յամենեցունց,

որպէս միայն ես . վասն որոյ ոչ բա-
ւէ ժամանակս այս խոստովան լի-
նել զբազմութիւն մեղաց իմոց . զի
որչափ յաճախեցին յիս գթու-
թիւնք քո , այնքան առաւելայ 'ի
մեղանչել . և որչափ մեծացան շնորհք
քո , յորդեցին յանցանք իմ ։ Զի
մերձեցար դու առ իս , և ես հե-
ռացայ 'ի քէն . դու կոչեցեր զիս ,
և ես ոչ անսացի . ցուցեր ինձ ճա-
նապարհ լուսոյ , և ես չոգայ ընդ
խաւար . եդեր առաջի իմ կեանս ,
իսկ ես ընտրեցի զմահ . 'ի քէն հրա-
ւիրեցայ 'ի բարձունս , և կամակար
մտօք իջի 'ի դժոխս . զոր քակեցեր
դու՝ շինեցի ես անձին իմոյ . զոր
սիրեցեր դու՝ ատեցի ես . զոր կա-
մեցար դու՝ ես ոչ ախորժեցի . և
ընդ որ ոչ հաճեցար՝ ընտրեցի զայն ։
Վասն որոյ ամօթ երեսաց իմոց ծած-
կեաց . զիս , զի ամենեւին ընդ հա-
կառակսն չոգայ . այլ ոչ եղէց ան-
յոյս 'ի մարդասիրութենէ քումմէ ,
որ ընկալար զաղաչանս մաքսաւո-
րին , և զոր հայցեացն ետուր նմա .
և զկնոջն պոռնկի ոչ մերժեցեր

զարտասուս , հայեցեալ 'ի հաւատս նորա . միով բանիւ խոստովանութեան և խնդրուածոց և զաւազակն արարեր արժանի ընդ. քեզ մտանել 'ի դրախտն . վասն զի ոչ իսկ զօրէն սաստկութիւնք մեղաց կալ առաջի ողորմութեան քո :

Մի և զիս անտես առներ տէր , այլ գթութեամբ քով ջնջեա զանօրէնութիւնս իմ . զի 'ի յայտնութեան քում եղէց առանց ամօթոյ , և մի դատապարտեալ 'ի խաւարն արտաքին . ուր լալն աչաց է և կրճելն ատամանց : Զի թէ այժմ տանջիմ 'ի խղճէ մտաց իմոց՝ միայն յիշելով զօրն ահագին և զարհուրելի , զի՞նչ կրեցից՝ յորժամ պատահեսցէ ինձ տեսանել անճառ փառօք և ահաւոր դասուք հրեշտակաց եկեալ դքեզ տէր . եթէ ոչ ողորմութիւնք քո ժամանեսցեն ինձ , կործանելոց եմ վաղվաղակի : Դարձ տէր , և մի բարկութեամբ տանջեր . յիշեա զողորմութիւնս քո և զգթութիւնս քո որ յաւիտենականն . այլ մեղաց իմոց և անօրէ-

նութեանց արա մոռացումն և քաւութիւն վասն անուան քո . որ ընդունիս զամենեսին՝ ոյք դառնան առ քեզ, և ներես ամենեցուն՝ որոց խնդրեն 'ի քէն, ներեա և իմոց անօրէնութեանց՝ որպէս գթած և մարդասէր՝ Աստուած բարերար ։ Ցիշեա զբնութեան մերոյ զտկարութիւնս, և մի պահանջեր զպարտս յանցանաց իմոց . Թէպէտ և անթուելի են չարութիւնք վարուց իմոց, այլ ոչ որպէս գթութիւնք ողորմութեան քո . Մեծ են յանցանք իմ, այլ ոչ յաղթեն շնորհաց քոց . սաստիկ են վէրք իմ, այլ ամենիմաստ ես բժիշկդ և դիւրահնար . ծանունք են բեռինք մեղաց իմոց, այլ կարող ես տէր թեթևացուցանել, նա և բնաւ իսկ կորուսանել ։ Ջերծո զիս 'ի տոռանց աստի մեղաց որ պատեցան զինեւ . զի մի կապանք տանջանաց գեհեննին պատեսցին զանձամբ իմով, և այրեցայց կայծակամբք մշտնջենաւորօք՝ եղեալ կերակուր որդանցն, որոց ոչ է վախճան ։

Ամենագութ և ողորմած փրկիչ, յորժամ գաս հայրենի փառօք՝ ժողովել զկենդանիս և զմեռեալս, և հատուցանել իւրաքանչիւր արժանապէս, 'ի հոսել յորդախաղաց գետոցն հրեղինաց, որովք ընտրին չինուածք գործոց՝ այրելեաց և մնացականաց. յորժամ նստիս յաթոռ դատողութեան, և գումարին առ քեզ ամենայն ազգ երկնաւորաց և երկրաւորաց. յորժամ առնես ընտրութիւն գաւազանաւ հրամանաց՝ օդեաց և այծեաց, դատելով յիւրաքանչիւր արժանընկալ կայանս. յորժամ կոչես առ քեզ օրհնութեամբ զսիրելիս քո, մուծանել յուրախութիւն կենացն անվախճանից, ուտել ընդ քեզ և ըմպել առ սեղանն արքայութեան. իսկ զառ 'ի քէն օտարացեալսն յուղարկես անիծիւք 'ի պատրաստեալն սատանայի և պաշտօնէից նորա՝ 'ի հուրն յաւիտենից: Յայնժամ և զիս զարժանաւորս բիւրապատիկ տանջանաց՝ մի մերժեր յողորմութենէ քումմէ, այլ վասն անուան քո մե-

ծի տուր ինձ տեղի հանգստեան ,
Թէպէտ և ոչ ըստ սուրբս քո . վասն
զի բազում են 'ի տան Հօր քո օթե-
ւանք պատրաստեալք . զի և ես ո-
ղորմութեամբ քով արժանի եղէց
օրհնել զքեզ ընդ Հօր և ընդ Հոգ-
ւոյդ սրբոյ , այժմ և միշտ և յաւի-
տեանս յաւիտենից . ամէն :



ԺԶ·

# Աղօթք

ԳԱՆԴԽՏԻ

ԱՐԱՐԻՉ ամենայնի յանեղծութիւն և յանապական կազմութիւն, ոչ մնացելոց միայն 'ի վիճակեցելումն հաստատութեան, և կացելոց յորում ընկալանն առ 'ի քէն 'ի սկզբանէ՝ յանլուծանելի գոյացութեանն, այլ և ծորելոց անխորհրդդաբար 'ի բնաւորական գեղեցկութենէն. որոց ընտրեալ կամօք զմահ և զանզարգութիւն, զչարութեանն լինել տեղի, փոխանակ զքեզ ընդունելութեան և գեղեցկազարդութեան և տեսութեան և կենաց անմահականաց։ Յորոց մինն ըստ բնութեան հաճութեամբ և կամօք տիրապէս եղեւ չար և խաւար, պատճառ ինչ կորստեան 'ի բնութենէ

ոչ ունելով յաղագս անմարմնակա-
նի և անհնարկաւոր էութեանն ըստ
առ 'ի քէն ստեղծագործելոյն . որոյ
կորստեանն չէր հնար դիւտի և բժըշ-
կութեան : Իսկ մարդն Թէպէտ և
ստարացաւ յիւրմէ կայանէն , յա-
ղագս նախամեծար առնելոյ զբանս-
արկուին հրապոյրս խաբէութեան
քան զխորհրդական և զսուրբ հրա-
մանաց քոց պատուիրանս . սակայն
անչափ և յետ այնորիկ ցուցեր 'ի
նա զանճառելի քո քաղցրութիւն 'ի
պանդխտութեան իւրում տեղւոջ :
Եւ ետուր ազգի ազգի տեսչու-
Թեամբ 'ի դարս դարս մխիթարու-
Թիւն տրամութեան նորա , և առ
յոյս ապագայից Թողութիւն մե-
ղաց , և մահու խափանման առհա-
ւատչեայ . որով ցնծայր ըստ զօ-
րութեան՝ յառաջ քան զընդունելն
զայնոսիկ արդեամբք 'ի ձեռն մար-
դեղութեան Միածնի քո . և նա-
խատեսութեամբ նշանակութեանցն
յորդնորինակաց՝ իրօք և բանիւք ,
զանյուսութեանն խաւարաւ 'ի բաց
վարէր . և առաւելապէս՝ զպատ-

ճառն դառնալոյն միւսանգամ 'ի սեփական իւր բնակութիւն և գաւառ յօտարութենէ անտի՝ ցանկայր տեսանել. այսինքն զէակցի քո Բանի մարմնով եկաւորութիւն յաշխարհ. և բերանօք սրբոցն աղաչէր զքեզ, Աստուած զօրութեանց դարձո զմեզ, երեւեցո զերեսս քո մեզ, և կեցցուք: Եւ ոչ ոք 'ի նոցանէ համարէր զինքն բնակ և որդի աշխարհիս այսորիկ. վասն որոյ խոստովան լինէին՝ թէ օտարք և պանդուխտք են. քանզի ազնուականի և հիմամբք հաստատելոյ քաղաքի ցանկացեալ էին, որոյ ճարտարապետ և արարիչ դու ես:

Եւ արդ տէր իմ և Աստուած, ծանեայ և ես՝ թէ ոչ կարէ անձն ընտանենալ քեզ, որ սիրէ զանկայուն բնակութիւն աշխարհիս այսորիկ. և չէ հնար թռչել վաղվաղակի մահկանացու այսորիկ մարմնով և հասանել 'ի յերանելի քաղաքիդ բնակութիւն. աւի ինձ օրինակ իմն տպաւորական՝ տալ զիս պանդխտութեան և օտարութեան.

'ի պանդխտութենէ և յօտարութե-
նէ ընկալ զիս տէր. զի հայր իմ և
մայր իմ թողին զիս. ծանիր զիս
քաղցրութեամբ իբրեւ զքո. զի
վասն խնդրելոյ զքեզ հեռացայ յազ-
գակցութենէ արեան և մարմնոյ.
պահեա զիս անբիծ և անարատ. զի
վասն չլինելոյ իսկ բծական և արա-
տաւոր՝ փախեայ 'ի սննդակցաց և 'ի
գաւառէ։ Եւ դու տէր իմ և Աս-
տուած Յիսուս Քրիստոս, որ եղեր
վասն իմ պանդուխտ յաշխարհի,
օտար և անտուն, աղքատ և անանկ,
ճոխդ և մեծատուն և արարիչ ամե-
նայնի, ոչ փափկութեան մարմնոյ
նիւթ ինչ՝ կամ յաւելուածս ստա-
ցուածոց, յորոց և փախեայն իսկ՝
խնդրեմ. նա և ոչ զհարկաւորացն
որպէս մարմնասէր, այլ զի արժա-
նի եղէց սիրել զքեզ, և լինել սի-
րեցեալ առ 'ի քէն։

Դու տէր 'ի փախստեանն Յակո-
բայ երեւեցար 'ի տեսիլ սքանչելի,
և յուրախութիւն փոխեցեր զտրտ-
մութիւն նորա, և 'ի քաջալերու-
թիւն զերկեւղն. և տուր նմա ոչ

միայն հաց ուտելոյ և հանգերձ ըզ-
գենլոյ, այլ և բազում մեծութիւն՝
զոր ոչն աղօթեաց, և որում ակն
իսկ ոչ ունէր. տուր ինձ կալ ան-
շարժ ՚ի վերայ խարսխի պատուի-
րանաց քոց: Եւ դարձեալ մեծարե-
ցեր զնա ՚ի գործ նորա անդրէն՝
միւսանգամ գալստեամբ քով, և
անուանն դրութեամբ. և փրկեցեր
զնա ՚ի ձեռաց Լաբանու և Եսաւայ,
այլ և յորդւոցն Քանանու ՚ի կոտո-
րել որդւոց նորա զսիկիմացիսն:
Լեր և ինձ փրկիչ ՚ի հակառակ և
յապստամբ չար զօրութեանց, որք
խնդրեն զանձն իմ հանապազ կո-
րուսանել զնա: Խաղաղացո և ըզ-
բնութեանս մարտ՝ ստեղծիչ բնու-
թեան, հայելով գթածաբար յան-
զօր և ՚ի տկար մտաց իմոց լուծու-
թիւն, և ՚ի մեղսասէր գարշախնդիր
կամս իմ: Որ զմանուկն Յովսէփ ՚ի
չարանախանձ եղբարցն և ՚ի լկտի
կնոջէն եգիպտացւոյ մեծաւ նա-
խախնամութեամբ ապրեցուցեր՝
յոգի և ՚ի մարմին խնայելով, և կա-
ցուցեր Թագաւոր ՚ի վերայ եգիպ-

տացուոցն. և անթիւ բիւրս մարդկան կերակրելով 'ի ձեռս նորա՝ կորզեցեր 'ի լեզաջինջ առնողէն մահուանէ։ Փառաւորեա և յիս զամենազօր անուն քո, տալով աջ փրկութեան գերեալ անձին իմոյ՝ յօրինաց մեղաց՝ զլինելոց հակառակ օրինաց մտաց իմոց, և զխայթոց մահուն ըղնոյն իսպառ սատակեա, տէր ոգեսէր։

Ես ինձէն վաճառեցի զանձն իմ 'ի գինս կորստեան, և արկի 'ի գուբ խաւարին. աւետարանիչք փրկութեան բանտարգելոցն ոգւոց՝ հան զիս 'ի գբոյ տառապանաց և հեղձման։ Ոչ անջրպետիս բացականութեամբ վայրաց, և տեղեաց հեռաւորութիւն 'ի քէն ոչ մեկուսեալ զատանիմ, Աստուած մերձաւոր. ուստի և ոչ յանծանօթից քոց միջի նուաղեն սքանչելեաց քոց մեծութիւնք, այլ զօրացեալ բարձրանան առաւել՝ զամենակալ իշխանութիւն քո յայտնապէս քարոզելով. որպէս և 'ի Բաբելոնի զտղայոցն սըրբոց զառ քեզ սէրն և զճշմարտու-

թիւն հաւատոցն կամեցեալ աշխար-
հալուր առնել, զանազան սքանչե-
լեօք յոլովագունիւք արարեր զնո-
սա անուանիս. և զանմեղութիւնն
Շուշանայ, զքեզ միայն յայտնի 'ի
ձեռն մանկանն Դանիէլի յայտնե-
ցեր ամենեցուն. և զստութիւն չա-
րաբարոյ և անզեղջ ծերունեացն
դարձուցեր 'ի գլուխս նոցա. և մե-
ծացուցեր, ամենազօր, զպահարկու-
անուն քո առաջի հեթանոսացն,
որպէս ամենայն ուրեք յամենայն
ժամանակի: Իսկ ես անհամարձակ
գոլով յաղտեղութենէ անձին ի-
մոյ, զիա՞րդ իշխեցից խնդրել ըստ
սրբոցն և յիս կամ ինեւ ցուցանել
զզօրութիւնս նշանաց: Բայց յա-
զագս թողութիւն գտանելոյ այժմ՝
վստահանալով յանբաւ մարդասի-
րութիւն քո, այլ և տալով համբե-
րութիւն ժուժկալութեան 'ի տար-
աշխարհիկ պանդխտութեանս, և
ամրութիւն յամենամուխ նետից
սատանայի. յորմէ խոցոտիլ բնա-
ւորեալ են անապատացեալքն 'ի
քումմէ օգնականութենէ: Եւ արդ

տէր իմ Յիսուս Քրիստոս, լեր ինձ պարիսպ ամրութեան շուրջանակի, և 'ի բաց վարեա զամենայն խորամանկութեան չարին մեքենայս։ Զգուշացիր 'ի պահպանութիւն ծառայի քո ամենայն ուրեք. որպէս զի անկասկած մնալով 'ի մեղաց խաբէութենէ, և մաքուր հոգւով և մարմնով արժանի եղէց գոհանալ զքեն հանապազ, և փառս մատուցանել քեզ ընդ Հօր և սուրբ Հոգւոյն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն.։



# ԺԷ.

## Աղօթք

### ԱՌ ՀԱՅՐ

Տէր Հայր և Աստուած կենաց իմոց, զբօսանս աչաց մի տար ինձ, և զցանկութիւն դարձո յինէն: Ցանկութիւն յորովայնի և գիջութիւն մի հասցէ ինձ. և անձին լըրբենւոյ մի մատներ զիս: Զի քոյ օգնականութեամբ և քեւ պահպանեալ ապրեցայց յահաւոր հրոյ գեհենոյն. և քեզ փառս մատուցից յաւիտեանս յաւիտենից. ամէն:



# ԺԲ.

## ՈՂԲՔ

Անձն իմ տառապեալ, և գերեալ'ի սատանայէ, ընդէ՞ր ոչ զգաս զկորուստ քո. որո՞վ յուսով քաջալերեալ՝ կաս դատարկացեալ'ի բարեաց գործոց. զի՞նչ գործեսցես 'ի պահանջման պարտեացն համարոյ: Առաջի կայ քեզ կորուստ անդիւտ. վասն զի բարկացուցեր զարարիչն իսպառ, և ոչ ծանեար ըզբարեգործն. այլ որ սիրեացն զքեզ, ընդդէմ դարձար. և հեստեցեր նմա՝ որ կամեցաւ քեզ կեալ: Արդ ո՞ ցածուսցէ զեռանդն բարկութեան նորա. կամ ո՞վ աղաչեսցէ զերեսս նորա 'ի հաշտութիւն քեզ. հեգդ և թշուառական՝ ընդէ՞ր ոչ ակնածեցեր 'ի պատուոյ փառաց նորա. վասն է՞ր ոչ մեծարեցեր ըզփրկական նորա զհրամանս. է՞ր ա-

զադատ կամեցար զկորուստ քո ։ Ո՞ հաւանեցոյց զքեզ ապստամբել 'ի տեառնէ ․ ո՞ կողոպտեաց զփառս քո ․ ո՞վ աղքատացոյց զքեզ 'ի ճոխութենէ ․ ո՞ւմ հաւանեալ ստեար 'ի բաց 'ի գրկացն հայրենեաց , և արտամեցուցեր զգութս նորա ․ զի սիրէր զքեզ , և կամէր լինել միշտ առ ինքեան ․ և դու արհամարհեալ զնա՝ զհետ չոգար թշնամեաց քոց ․ զորդէգրութեանն պատիւ կորուսեր , և դասեցար ընդ ատելիս նորա ։ Զար՝ փոխարէն ընդ որոց աւերն հատուցեր ․ վասն այնորիկ շարժեալ է ողորմութիւն նորա 'ի ցասումն , և փոփոխեալ յատելութիւն՝ սիրոյ նորա ջերմութիւն ․ վերացեալ է ձեռն նորա հարկանել զքեզ , և սուր նորա սրեալ որպէս փայլակն՝ խնդրել զվրէժ ատելութեան քո ։ Եւ երանի՜ թէ աստ միայն ․ քանզի գիտեմ՝ եթէ փոքր է այժմու ժամանակիս հարուածք ․ և ոչ այսու վճարին անհնարին բազմութիւնք մեղաց իմոց ։ Աւա՜ղ մեծի տուգանիս ․ զո՞ ընդ որո՞ց փոխանա_

կեցի . արտասուք բնութեան ոչ են
ինձ բաւական յողբումն իմոյս կո-
րուստեան . զրկեցայ 'ի հարսանեացն՝
վասն աղտեղի պատմուճանիս . մեր-
ժեցայ յերանելի ցնծութենէն և 'ի
սուրբ առագաստէն , վասն իւղոյն
պակասութեան . դրունքն փակե-
ցան , և զիա՞րդ իշխեցից բախել .
գուցէ անախորժելիս բարբառեսցի
'ի ներքուստ փեսայն , թէպէտ և
է ողորմած . գուցէ 'ի բաց առա-
քեսցէ զիս յինքենէ իբրև զգործօղ
անօրէնութեան , կամ հրամայեսցէ
կապել և հանել 'ի խաւարն արտա-
քին : Ո՜վ հիգութեանն , ո՜վ դժուա-
րալուր պատմութեանն . հասանէ
անկանել 'ի մշտնջենաւոր կենացն ,
և ժառանգել զանվճար պատու-
հասն . երանի՜ թէ 'բնաւ իսկ չէի
ծնեալ , և ոչ տեսեալ զլոյս արե-
գականս այսորիկ . երանելի ար-
գեօք էի , եթէ ծորեալ անկեալ
արտաքսէի որպէս զվիժածան , քան
ընդունել զձայն սաստկութեան
հրաժեշտի 'ի քաղցրախօս բերանոյ
Փրկչին :

Ո՛վ աշխարհեսցէ ընդ իս զկորուստ իմ . ո՞ տրտմեսցի ՚ի վերայ թշուառութեան իմոյ . արարածք սգակից եղերուք ինձ , և տարերք անշունչք ողբացէք զիս . սուրբ զուարթունք Աստուծոյ տրտմեցարուք ՚ի վերայ կորստեան իմոյ . զի թէ վասն դարձի միոյ մեղաւորի ուրախութիւն է ձեզ յերկինս , արդ և վասն իմոյս կորստեան տխրեցարուք . այլ և աղաչեցէք զբարերարն , թերեւս խընայեսցէ յանձն իմ դատապարտ , կամ եթէ ներելով տանջեսցէ . վասն զի ես ոչ իշխեմ ժտել՝ զամօթ պատկառանաց ունելով յաղագս մեծապէս ընդդիմադարձութեան իմոյ Քրիստոսի : Թէպէտ և գիտեմ զանչափ քաղցրութիւն նորա , այլ կասկածեմ ՚ի բազմութենէ մեղաց իմոց . վստահ եմ յողորմութիւն գթութեան նորա , այլ խոչընդակն են ինձ անօրէնութիւնք իմ . կամիմ զի մերձեցայց և աղաչեցից , այլ ամաչեմ գալ ՚ի դէմս տեառն , զոր զայրացուցի բազում անգամ . խէթ և խիղճ խորհրդոց

իմոց ոսոխ եղեալ յամօթ առնեն
զիս, և ոչ իշխեմ պաղատել ակըն-
կորեալ և ամաչեցեալ. կամ պա-
պանձեալ, և երկնչիմ բանալ զբե-
րան. զարհուրումն սրտի իմոյ յե-
րեսաց տեառն ափ 'ի բերան առնէ
զիս: Եթէ գոյր ոք միջնորդ և բա-
րեխօս, որ տայր ինձ առ 'ի նմանէ
մուրհակ համարձակութեան, թեր-
եւս կարէի մատչել յաղօթս. բայց
կարծեմ թէ զազրացան յինէն ա-
մենեքեան ոյք սիրեն զԱստուած,
և վասն աղտեղութեան իմոյ զզուեն
զիս և գարշին յինէն. և այժմ ոչ
գիտեմ զինչ արարից, կամ զո՞ ա-
ղաչեցից լինել վշտակից և բարե-
խօս: Մի եւեթ կարծեմ լուծումն
տարակուսանաց իմոց՝ և հնար փըր-
կութեան՝ ապաւինել առ նոյն ինքն,
որ կարեկցաբար գթայ 'ի գործս
ձեռաց իւրոց. որ միայն քան զա-
մենեսին է գթած և անոխակալ. և
վասն անչափ երկայնմտութեան իւ-
րոյ ոչ բարկանայ իսպառ, և ոչ
յաւիտեան պահէ ոխս, այլ ընդ-
առաջ եւս ելանէ դարձելոցն 'ի չա-

բութեննէ վարուց սիրով մեծաւ և խոնարհութեամբ. և ոչ փոքր ինչ բերկրանօք զուարճանայ ընդ կանգնումն գլորելոցն, և առ ոտս նորա գիմելոցն. ընդալով 'ի նոսա թէ պարտ իցէ ասել՝ մանաւանդ, քան յորս երբէք ոչ անցին ըստ սահման պատուիրանաց նորա, աղաչէ և զայլս ուրախակից ինքեան լինել. վասն որոյ յիշելով զայս ամենայն, վստահացայց ասել. Հայր մեղայ յերկինս և առաջի քո, և ոչ եւս եմ արժանի կոչիլ որդի քո. արա զիս իբրև զմի 'ի վարձկանաց քոց. զի մի եղէց սովամահ 'ի չքաւորութենէ, այլ կեցից վասն ողորմութեան քո, որ կամիս իսկ զկեալ մեղաւորաց, և ոչ զմահ ։ Տուր ինձ համարձակութիւն կալ առաջի քո. քանզի պոռնիկք և մաքսաւորք մերձենան առ քեզ, և ժտին զփրկութիւն գտանել անձանց, և դու ոչ մերժելով՝ շնորհես առատաբար ։ Ընկալ տէր և զիմս պաղատանս. և արա արժանի 'ի քէն պարգեւաց զանձն իմ թշուառական. անտես արա

զբազմութիւն անօրէնութեանց ի-մոց, և մի յիշեր զմեծութիւն մեղաց իմաց. կարկառ զաջ քո ամենազօր, և ձգեա՛ 'ի բաց զընկղմեալս 'ի խորու-թենէ աղմի չարեաց. շնորհեա ինձ լուանալ արտասուօք զչար զայսպիսի շաղախումն, և ըստ ձեռն օրինակի արասցես մաքրութիւն. մաշեսցին փուշք մեղաց իմոց 'ի կիզմանէ աստուածային գթութեան քո. և մարդասիրութեան քո ջերմութիւն հալեսցէ զսառնամանիս մեղաց իմոց. և բուսցին փոխանակ փշոյն՝ բոյսք բարութեան և առաքինութեան յանդաստանի քում, ոռոգեալք և աճեցեալք 'ի շնորհաց քոց, և պահ-պանեալք 'ի գազանացն ապական-չաց։ Զի այսպիսեօք պատուեալ եմ՝ հանգուցից զքեզ պտղովք ի-մովք, և տաց քեզ օրհնութիւն յա-ւիտեանս յաւիտենից. ամէն։



# ԺԹ.

## Աղօթք

### ԱՌ ՈՐԴԻՆ

ԱՆՍՏՈՒԵՐ լոյս, և գոյացուցիչ բնութեան լուսոյ, միածին որդի Աստուծոյ՝ Յիսուս Քրիստոս, Հօր քում արարչակցի 'ի լինելութիւն ամենայնի, զորոյ անվրէպ ըստ բնութեան բերես մշտնջենաւորապէս զնմանութիւն. կատարելոյ Հօր կատարելութիւն, և մեծին մեծութիւն. հզօրին զօրութիւն, իմաստնոյն իմաստութիւն. լուսոյն ճառագայթ, և սկզբնատպին պատկեր. ծնողին բան. յորմէ 'ի լրման ժամանակաց առաքեալ՝ եղեր մարմին, զի զեղեալսն մարմինն և զտարագրեալսն 'ի քումմէ հոգւոյ՝ հոգեկիրս արարեալ աստուածացուսցես. և զչարչարելի բնութիւն զԱդամայ

առաջնոյ՝ չարչարանաց յաղթեցուսցես՝ քո 'ի չարչարանս մատնելով, Ադամ երկրորդ, և տէր յերկնից. յոր ոչ ոք ել, բայց իջեալդ միայն, որ ելեր 'ի վերոյ ամենայն երկնից: Մարդկօրէն մահու և թաղմամբ՝ հաճեցար ընդ քեզ յարուցանել, զորս պատուեցեր մերձաւորութեամբ, կցորդութեամբ՝ մարմնոյ և արեան, խափանելով զայն՝ որ զիշխանութիւն մահուն ունէր. և նստուցեր ընդ երկնաւորս ազատաբար զվտարանդեալս 'ի ծառայութենէ երկիւղիւ մահուն, և ետուր առհաւատչեայ խոստացելոցն առ 'ի քէն բարութեանց հաւատացելոց քոց՝ զՀոգին ճշմարտութեան որ 'ի Հօրէ ելանէ. որպէս զի զհաւատարին քեզ ըստ աստուածութեանն էութեան, և զուգապատիւ նոյնութեամբ բնութեանն, ըստ որում և Հօր, ունելով անշուշտ և անճառելի գրաւական, մի իւիք երկմտեալք թերայոյսք լինիցին, այլ խարսխեալք 'ի պարգևումն՝ հաւատովք զյուսացեալն իբրև զընկալեալ յայտնապէս ողջունեսցեն:

Եւ արդ տէր, որ այսքան և այս_
պիսի սիրոյ ապացոյց վասն մեր ե_
տուր, գթա և յիս, որ առաւել_
քան զամենեսեան ունիմ պէտս
մարդասիրութեան. զանճառելի
քաղցրութիւն սիրոյ քո ունիմ առ
քեզ բարեխօս, զքո ինքեան պար_
գեւասիրութիւնդ և զանոխակալու_
թիւն. մի մտաներ 'ի դատաստան
ընդ ծառայի քում. մի պահանջեր
զհամարս բիւր քանքարին զոր պար_
տիմն. մի զիս ըստ իմումն դատիր,
այլ_ դիր նպաստակ դատաստանի զան_
չափ քաղցրութիւն սիրոյ քո, որ և
մանաւանդ սիրելին է քեզ: Որովք
'ի քեզդ են՝ վարեսցիս յիս տէր, և
մի ըստ որում 'ի դէպն և պատշաճն
է ինձ. մի արդար դատաստանաւ՝
այլ ողորմութեամբ դատեա, և 'ի
կշիռ զողորմութիւն դիցես. զի մի
'ի սպառ զրկեցայց յանբաւութենէ
քաղցրութեան քո. վասն զի ոչ
երբեք զմարդ ես 'ի դատելն. դարձ_
ցի սիրտ քո 'ի նոյն. յիշեա զյաւի_
տենից ողորմութիւն քո. անտես
արա զբազմութիւն յանցանաց ի_

մոց , Ներեա անոխակալութեամբ
քով ։ Տուր և զեղջ սրտի իմոյ , և ա_
չաց իմոց արտասուս , որպէս զի
ըստ կամաց քոց ապաշխարեցից ․ որ
կամիս զամենեցուն զկեալն և 'ի գի_
տութիւն ճշմարտութեան հասա_
նել , առա փոփոխումն խստութեան
սրտի իմոյ ։ Քանզի քո շնորհելով
զգիտութիւն՝ ծանեաւ զքեզ աւա_
զակն , և արդարացեալ ընդ քեզ
եմուտ 'ի դրախտն ․ և պոռնիկն
ընկալաւ զթողութիւն մեղաց ․ մի և
յինէն գարշելով դարձուցաներ զե_
րեսս քո ․ զի թէպէտ և ես ծանրա_
բեռն եմ մեղօք , և աղտեղի եմ քան
զամենեսեան , այլ ողորմութիւն քո
անսպառ է , և բաւական առ 'ի մաք_
րութիւն ․ առա և զիս մասնաւո_
րել՝ որոց գտին 'ի մեծութենէ քում
մէ զողորմութիւն ․ և ընդ նոսին
փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ
սուրբ Հոգւոյդ , այժմ և միշտ և յա_
ւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

# Ի.

## Աղօթք

### ԱՌ ՈՐԴԻՆ

ՈՐ 'ի չափ խոնարհութեան մերոյ՝ յաղագս մարդասիրութեան քո իջեր միածին Որդի Աստուծոյ, էակից և կերպարան Հօր, ոչ համարեալ ինչ յափշտակութիւն զգոլն հաւասար Աստուծոյ և Հօր. զանձն թափեցեր զկերպարանս ծառայի առեալ, և զմահ խաչի յանձն առեր, զի զմեզ ազատեսցես յանիծից և 'ի մեղաց, և 'ի ձեռն արեան քո մաքրեսցես յամենայն աղտոյ անօրէնութեան, և լուացեալ ընծայեսցես որպէս զսուրբ՝ չարչարանաց քոց պտուղ Հօր քում. և դառնալով 'ի հայրենական քո պատիւ և յաթոռ յետ յարութեան 'ի մեռելոց, առաքեցեր զՀոգին քո

սուրբ զգուշակից քո և զհանգի-
տապատիւ 'ի մխիթարութիւն և 'ի
լուսաւորութիւն մեզ . և աս-
տուածազգեաց զհողեղէնս արա-
րեալ բնութիւն՝ թագաւորեցուցեր
ընդ քեզ տէր անոխակալ և աննա-
խանձ . և մատնաւորեալ իմ այս-
պիսոյ պատւոյ՝ դերազանցագունի
մտաց և բանի, դարձեալ յերկիր
անմտաբար կործանեցայ, և զմա-
քրութիւնն պարգեւեալ առ 'ի քէն
ձրի, աղտով մեղաց շաղախեալ կո-
րուսի . և լցեալ ամօթով կորանաց,
ոչ իշխեմ բանալ զբերան իմ ա-
ռաջի քո . զի գիտեմ ոչ արժանի
զիս գոլ միւսանգամ գտանել զո-
ղորմութիւն 'ի բարերարութենէ
քումմէ . քանզի մեծամեծ և զանա-
զան չարեօք գործոց իմոց 'ի բաց
պարսպեալ փակեցի զիս 'ի քաղ-
ցրութենէ կամաց քոց ։ Սակայն
դու ամենագութ՝ որ ոչ 'ի սպառ
բարկանաս, և ոչ յաւիտեան պա-
հես ոխս, ոչ ըստ մեղս իմ արարեր
ինձ, և ոչ ըստ անօրէնութեան իմոյ
հատուցեր ինձ, այլ երկայնմտու-

Թեւամբ քով գթացեալ խնայեցեր յիս կոչելով յապաշխարութիւն 'ի ձեռն քաղցրութեան քո. իսկ ես ըստ խստութեան իմում և անզեղջ սրտի՝ գանձեցի ինձէն ինձ բարկութիւն յաւուր բարկութեան և յայտնութեն արդար դատաւորութեան քո. յաղագս որոյ 'ի մէջ բազում և հարկաւոր տարակուսանաց մեծամեծաց պաշարմամբ ըմբռնեալ, ոչ գիտեմ զինչ արարից. զի ամօթ երեսաց իմոց ծածկեաց զիս, խնդրել յառատ մարդասիրութենէ քումմէ քաւութիւն և ողորմութին. Խէթ խղճի ստգտանաց սրտի իմոյ աներկբայ կարծեօք ընդոստուցանէ զիս 'ի զանգիտութիւն, և հեղձնուն միտք իմ 'ի դժուարին և 'ի ծանրագոյն անսուտ վկայութեանց աստի: Եւ արդ առ ո՞ ապաւինեալ դիմեցից, կամ ո՞ միջնորդեսցէ ինձ վստահութեամբ հաշտեցուցանել զանցասումն և զառանց բարկութեան քաղցր կամս քո. այլ զզոյն ինքն զքնութեան քո անքաւելի մեծութիւն, և անիմանալի հեզութիւն

զմտաւ ածեալ, ծածկեալ ճշմարտա-
պէս միջնորդ հաշտութեան և քա-
ւութեան մեղաւորաց, բարեխօս և
և տուիչ բարեաց, դատաւոր և ա-
ղերսօղ, այլ և պարտաւորիչ և ա-
զատարար. արդարութեամբ և իրա-
ւամբ քո ողորմած, բարերար բա-
րեաց, և կոչօղ մեղաւորաց. առող-
ջութեան ողջոց պարգևուիչ և պա-
հապան, և հիւանդութեն ախտացե-
լոց բժիշկ անկաշառ. երկեւղածաց
քոց անմարտնչելի զօրութիւն, և
տկարացելոցն 'ի ստամբակութեան
անսաստակութենէ՝ ոյժ և նեցուկ
հաստատութեան. անկելոց յա-
րութիւն, կապելոց ամրութիւն
անվթար. անճառելից բարեաց համ-
բարակ, և պարգեւաբաշխ յորդ և
անհուն առատութեամբ. կուրաց և
խաւարելոց լոյս մեծ, աջէից և տե-
սանողաց արարիչ և նախախնամող.
առ քեզ անկանելով դիմեցից, ըզ-
քեզ կոչեցից, քեւ ապրեցայց, որ-
բոց հայր և դատաւոր այրեաց:
Փրկեա զիս յատոխէն իմմէ, զգե-
րութիւն իմ դարձո հզօրդ. զպա-

րաւանդս կապանաց նորա քակեա յինէն, որ զՂազար կոչեցեր և հաներ 'ի գժոխոց, և զապականութիւն մարմնոյ նորա լուծեր իշխանութեամբ. հան և զիս 'ի գբոյ տառապանաց անօրէնութեան իմոյ. զնեղութիւն վիրաց հոգւոյ իմոյ բժշկեա. զծանրութիւն մեղաց իմոց՝ որով հեղձեալ կեանք իմ և փախեան յինէն, 'ի բաց շարժեալ ընկեա. այսօրէն վերստին զկեանսն շնորհեա կենդանութիւնդ և կենարար. հերձ զվիշապին կլանողի որովայն, որ զբուամբ ածէր զնոյն ինքն. և զիս կորզեալ արտաքս ձգեա 'ի խորոց անդնդոց, յոր ընկեցայ կամօք իմովք. դարձո՛ զիս Փրկիչ, և 'ի միջոյ ժանեաց գազանին զերծուցես զիս 'ի բաց. ապրեցո յոյս լքելոց, ապաւէն տարակուսելոց, Քրիստոս Աստուած իմ. մի՛ վերջանար յայցելութենէ կորուսեալ ծառայի քո. յիշեա զմարդեղութիւն քո որ յաղագս իմ. յիշեա զսուրբ չարչարանս քո, զհեղումն պատուական և աստուածային արեան քո,

միանգամայն և զորս յանձն առեր գործել և կրել վասն թշուառացելոցս 'ի բանտարկութեն մախանաց, և դատապարտելոց մահու՝ 'ի քէն տարագիր եղելոց. և մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն, զի նեղեալ եմ ես՝ վաղվաղակի լուր ինձ տէր. շահեսցին և բազումք՝ որոց փրկութեան ոչ իցէ յոյս, տեսանելով յիս զողորմութիւն քո քաջալերեսցին յուսով 'ի քեզ. քանզի և վասն միոյ որ ապաշխարիցէ, գիտեմ և հաւատամ ուրախանալ քեզ. մի յիմում կորստեան յանդարձութենէ՝ յարեսցի տրտմութիւն 'ի բնութիւնդ խնդութեանն անճառելոյ. յինէն ինչ ոչ 'ի բարեաց վճարի. վասն զի դժնեայ և չար սովորութեամբ օտարացուցի զիշխանականն 'ի բարիոք խորհրդոց, որում և ըզգայութիւնք հանդերձ մարմնով հետեւեալ՝ եղեն դահավէժ: Դու կատարեա յիս զհաճելին քեզ տալով մտաց իմոց իմաստս և խորհուրդս լուսաւորս և բարիս, և զգայութեանց իմոց սանձս համեստութեան

և ամփոփման․ լուծութեան մարմնոյ խմոյ՝ զօրութիւն առաքինւոյ և քաջ․ և յամենայն որ յիս ունակութիւն, փոխադրութիւն ամենակատար․ զի քեզ կարելի և դիւրադէպ յոյժ են ամենայն բարեաց տուչութիւնք․ և ես խոստովան եղէ և լինիմ զանձին տկարութիւն ։ Ի կամակարութենէ մի յաղթեսցէ եկամուտն՝ այլ բնաւորականն․ մի չարին սերմանեալ որոմադրութիւնն, այլ եդեալն 'ի քէն հաճելի և բարիոք զօրութիւնն․ զպատկերին շնորհ՝ վերըստին ծաղկեցուսցես յիս, և զիշխանականն դարձեալ ճոխութիւն՝ 'ի վերայ գազանական և անասնային ախտից պարգեւեսցես ինձ յամենայնի խաւարականդ և հզօր․ դարձո ինձ զկապուտն՝ քոյին պարգեւքն․ մի՛ թշնամին տկար՝ քոյոցն պարծեսցի յափշտակութեամբք․ ծանիցէ զզօրութիւն քո, որպէս ծանեաւն․ զարհուրեսցի 'ի բարձրացեալ բազկէ քումմէ, ըստ որում և տեղեակն իսկ է․ անամօթն պատկառեսցէ, որպէս և ամաչեացն․ զի զընդհան_





րական փրկութիւնն տեսցէ և յիս յատկապէս . մի՛ յաղագս հաստարակէն և եթ , այլ և վասն մասնաւորիս հասցեն նմա կորանք . որպէս զի մի՛ համարեսցի չարն փոյթ քեզ զբոլորէն լինելն , իսկ զմասանցն ոչ բնաւ . այլ զի գիտասցէ ամենայն ուրեք և յամենայն ժամանակի որոց խնդրենն զքեզ՝ լինել փրկիչ քեզ անճառելի հոգաբարձութեամբ . վերաւորեսցի զանողջանալին , և 'ի միում միայն զմեծութիւն քաղցրութեան գթոց քոց հայելովն սպառեսցի որպէս 'ի հուր մոմ ։ Արդ յամենայնի երկայնամիտդ և անոխակալդ , և ընդունող հայցուածոց մեղաւորաց դարձելոց առ քեզ , մի՛ անտես առներ զիս , և զբանս աղաչանաց իմոց . այլ տուր ինձ զխընդրուածս մաղթանացս այսոցիկ , զի և ես ողորմութեամբ քով արժանի եղէց ընդ կատարեալ ծառայս քո փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Հոգւոյդ սրբոյ . այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

# ԻԱ.

## Մաղթանք

### ԱՌ ՀԱՅՐ ԵՐԿՆԱՒՈՐ

ՀԱՅՐ ուսուցեալ ասել, զիւրն ըստ ճշմարտութեան ծնօղ զերկնաւորն, և էապէս մարդասիրի փրկչին և տեառն. ամաչեմ ակնկորեալ, զանգիտեմ անուանել և կարդալ, մտօք և սրտիւ տագնապիմ զարհուրեալ, պապանձեալ կարկին շրթունքս և չիշխեմ արձակել զմեծապատուութեան ինձ բարբառ զամենատարփիկն գերաշխարհեաց, զցուցակ անճառելոյ մարդասիրութեան. զոր լուեալ գերամաքուր և փաղփուն անձին է և անապական մարմնոյ շրթանց: Նկուն հակառակորդն լինի զըմպրեալ ՚ի ձայնէն և յանուանն զօրութենէ. և դասք ապստամբութեան նորա

սպասաւորք՝ մոլին փախստեայք 'ի հեռաստան անբաւ. և զխո՛րդ ոչ. քանզի մոմ անկեալ 'ի հնոց ձողոպրել կամ զբնութիւն պահել զգոյութեանն իւրոյ անսահ և անծորելի՝ ոչ կալցի զօրութիւն։ Բայց ես վասն զի կորուսի զզարդուն այնմիկ տեսիլ փառաց և ահարկութեան, իշխել զձայնին պայմանաց շշունչ դանդաղիմ ճշմարտապէս. թաղձամ մտօք, այլ կասկածեմ յանմաքրութենէ ոգւոյս. լինիմ բնաւորապէս ջեռեալ երանելի անձկոմն, այլ պատկառանացն անջրպետութեանն խորոցն մղեալ՝ նահանջէ 'ի վերջին տեղի զանմաքրապէս նուիրողաց բարեձայնութիւն։ Եւ սքանչելի արդարեւ բարբառ. մատչել յօժարեմ սրտի գեղձմամբ, և խողձի մտացս պարաւանդեալ, և համարեալ ոչ չափաւորապէս՝ անդրէն ձգեալ յետս լինելով։

Ո՞վ չարեացս, զինչ կրեցի. կամ զարդարն ասել, որպիսի խորխորատ յօժարեալ կազմեցի անձին, յորոց բարութեանց զիս ինքն կողոպտեալ

զրկեցի ։ Ո՜վ թշուառութեանս ․ ո՛ զանասելի կորուստ ինձ ողբասցէ ․ զիւրդ կարացից բանիւք շրթանց յանդիման զինէն ամբաստանութեանս կացուցանել ծանրութիւն ․ ո՛ր արդեւք բաւեսցէ մատեան քարտի ընդունել զբողոք այսպիսոյ ստոխութեան և դատախազանաց ․ և երանի թէ գրել զամենայն ոչ ինչ թերեւս որքան ինչ զինէն լինէր ունել այժմ առաջի , և տալ 'ի ձեռս դատաւորին արտասուաթոր աչօք և բեկեալ անձամբ ․ գիտեմ զնա մարդասէր , Ճանաչեմ քաջ զգթութեան նորա զանդունդս , զառ դարձեալսն 'ի մեղաց՝ սրտիւ անոխակալութիւն և քաղցրութիւն վաստակութեան մեղանացն գրոյն ։ Խոնարհէր թերեւս յաղագս բանականին և ընտանւոյ ինքեան հաշտականին քաղցրութեան՝ որ զգործով ուսեալ իմ զանձէն և զանոխակալութեան նորա բարերարութիւն ։ Փառաւորութեան նմա՝ պատկանաւորացն տեղոյ արժանի երբէք՝ թէպէտ հաղիւ կամ անա_

գան լինէր ։ Բայց ինձ ո՞ առ այսոքիկ միջնորդ , ո՛ աղաչող վասն իմ . քանզի բարեկամացուցի և ոչ զոք 'ի սրբոցն և յանարատիցն զնոցայն խոկալով . և է գթութիւն սիրոյ՝ առ համախոհս 'ի մարդկանէ բնաբար իմն ունակացեալ ։

Եւ արդ զի՞նչ ապաւինութեան օրինակ , կամ գործել հնարաւոր զի՞նչ ինձ , ոչ գիտեմ . ըմբռնեալ եմ խաւարաւ տարակուսանաց , շուրջ հայելով 'ի բոլոր կողմանս 'ի բնութենէ ծնելոյ՝ խնդրող զոք ոչ անձին իմոյ գտանեմ . զի եթէ ոչ ես ինքն ողորմեցայց իմում չարաչարագոյն գլխոյ , ո՞ յայլոց գթալ խոնարհեսցի յիս ։ Չկարեմ պատճառանս հնարից դիւրաւ գտանել 'ի համար պատասխանւոյ Թագաւորին , յորում պահանջիցիմ աւուր զերկայնամտութիւն նորա . ոչ ապաշխարութեան ինձ , այլ բարկութեան կամեցայ լինել առիթ . քանզի խառնեցեալ սրտիւ ոչ 'ի քաղցրութեանն վայելեցի գանձելով դժնդակութիւն 'ի

ձեռն զջնջման արտասուաց · ոչ փու-
խեայ 'ի գործոց ողմաձայնաց , ոչ
զանհնարինն զմտաւ ածեալ սովոյ
ողողականս : Դիմեցի առ հայր , և
զանբաւ նորա քաղցրութիւնն կա-
լայ ջատագով անձին · զոկեալս յո-
ղորմութենէ նշխարէ , թէպէտ և
զանմեղութիւն ոչ պահեցի և զուղ-
տահաճութիւն բարերարի հօրն : Եւ
որում կեալն սիրելի է ամենեցուն
և 'ի գիտութիւն գալ ճշմարտու-
թեանն , պարտ էր գոնէ ստահակին
ինձ նմանել որդւոյ : Մի արդեաք
յիշեա՞ց ինչ ամենառատն զառաջ-
նոյ անզգամութեանն զախալանացն
սաստկութիւն 'ի դարձին վերստին
առ ինքն · միթէ գարշեցա՞ւ 'ի տգե-
ղութենէ հօգւոյն մաքուրն յամե-
նայնի և գերազանցեալն սրբու-
թեամբ ծայրագունիւ · միթէ ան-
սա՞ց 'ի կատարումն գալ գործել
զոր ինչ խորհեցաւ թշուառացեալ
որդին · ո՞չ 'ի սրտին հայելով ախոր-
ժակս միայն՝ արար մոռացումն ա-
պիրատութեան · ո՞չ իւրով բա-
զում գթութեամբն ընթացաւ ընդ

առաջի որպէս բարեգործի ունէք որդւոյ 'ի սկզբանէ, նա եւս առաւել քան այնպիսումն, որ փափաքող կենդանութեան մեռելոյ և գիւտի կորուսելոյ։ Վասն որոյ առաքումն Միածնին 'ի մարդեղութիւն, զուգադաւնին որդւոյ սիրելոյ և հնազանդութիւն խոնարհութեան, ամենայնիւ հաւասարութիւն մեզ առանց մեղաց, անչարչարականին էութեանն չարչարանք մարմնով, և անմահին մեռելութիւն յաղագս մերոյ կենդանութեան։ Սա եկն կոչել ոչ զարդարս այլ զմեղաւորս յապաշխարութիւն. բժշկել ոչ զառողջս, այլ զախտաժէտս հիւանդութեամբ չարութեանն. 'ի բաց ընկենուլ զծանրութիւն բեռանց անօրէնութեան քան զգլուխ բարձրացելոյ. զայնորիկ կրողաց զլքեալս աշխատութեամբ հանգուցանել։

Արդ յերաւի որ զայսոսիկ 'ի ձեռն Որդւոյն Ճշմարտի և միայնոյ մատակարարեաց, անկշռելի գթութեամբ գիրկս արկանէր զերբեմն

ապստամբեցելոյ որդւոյն պարանո-
ցաւն , համբուրէր վասն կարօտու-
թեանն զատարաժամ անդրէն դար-
ձեալ որդին . զի թէպէտ և անա-
գան , սակայն ոչ անարժան գովու-
թեամբ . վասն որոյ և մերկութիւն
նշաւակութեանն ոչ տերեւով թը-
զենւոյ , այլ գեղեցիկ պատմուճա-
նաւ լինէր զգեցեալ . զոր և ունէր
իսկ նախ քան զօտարանալն 'ի հայ-
րենի ժառանգութենէն . և զքո-
կութիւն դարշապարացն տուեալ 'ի
վիշապին կամակորի խածուածն , ամ-
րացուցանէր վերստին խորհրդական
կօշկօք . զուարճակից առնէր զխմա-
նալն հոգիսն իւրոյ մարդասիրական
ուրախութեանն . երիցուն աղերսէր
որդւոյ արտաքս լինել նախանձու և
կարծեաց անպատուութեան ան-
ձին . զանճառելին առաջի արկանէր
պատճառ ցնծութեան . և եթէ ըն-
դէր պարարակն զենաւ զուարակ .
վասն զի եղբայր է , ասէ , կենդա-
նացեալ և գտեալ 'ի մահուանէ . մի
զանպարտ զբնութեանդ խորհելով
տխրազգած լինիս : Իսկ ես կարա-

ցեալ անբաւ յանցաւորութեամբ մեղանչականութեանն, յայն ամենայն ոչ հայեցայ դառնալ՝ ուստի մերժեցայն անձամբ առ խաղաղական հեշտաւէտութիւնն. այլ փոխանակ վերստին ուղղութեան և ապաշաւանաց ոչ դադարեմ յոտնառութենէ գայթման և 'ի գլորութենէ չարեաց մեծամեծաց, և անդրէն դառնալով 'ի փախուստ չարութեանն, լինիմ աւելի մանաւանդ քան թէ ողորմելի: Ի ձեռն խոստովանութեան զմեղսն և ոչ թաքուցանելոյ թուիմ փախչել 'ի նոցանէ և 'ի բաց դառնալ. իսկ զնովիմբ զառածանելով յաճախապէս հատանեմ 'ի վերայ անձին զվճիռ յաւիտենական պատուհասին. գրեմ ինձէն զինքենէ ամբաստանութիւն. զմին որպէս զատեցողի մեղաց 'ի ձեռն խոստովանութեանն. իսկ ըզմիւսն որպէս սիրողի զնոյն և կարի քաջ յայլագս ոչ երբեք առնելոյ զվախճան 'ի խորխորատն սողոսկելոյ կորստեան և խաւարի. զմին յաչս և յականջս մարդկան, զմիւսն ա-

ռաջի անհարկաւ և արդար դատաւո-
րին. և լինի որքան յիրացանաւ դոյ,
և դէպ է ուսանել. մինն կեղծա-
ւորական ձեւով պաճուճել. ապա
եթէ ոչ, հե՛մ որպէս զբարուռք սի-
րելեաւ գիրկս արկանեմ. ընդդէր
թշնամանեմ իբրեւ զգաւառ չարա-
չար և նենգիչ, և խանդաղատիմ որ-
պէս զպատճառաւ բարութեան.
զմէ՞ լինիմ ասոխ որպէս զրկեալ
յանիրաւէ. բայց միւսն ճշմարտու-
թեամբ լինի արձանս գրեալ։

Եւ արդ զինչ գործեցից, և ո՞ր
հնար իցէ փրկութեան. քանզի տե-
սանեմ զիս ինքն ճանապարհաւ
կենաց 'ի մահու իջեալ յատակս.
որով կարծեմն ապրել ըստ յոլովից
անձանց՝ շահել և ոչ ինչ։ Այլ հա-
կառակ նմին առաւել եւս մեծա-
ցուցանել 'ի վերայ իմ սպառնացե-
լոցն տանջանացն արհաւիրս. վասն
զի խոստացայ բազում անգամ զըղ-
ջանալ, զի դայս լինել՝ խոստովա-
նելն զեկուցանէր, և ոչ բնաւ պ-
տուղ արժանի ապաշխարութեան
ախորժեցուցանել Աստուծոյ։ Սա-

կայն լինէր և այն ոչ կարի ճշմարտութեամբ, որպէս վայել էր բժշկեն կամողաց, յայտնել բժշկաց զախտիցն դաժանութիւնս և յոլովութիւն. այլ պատրուակեալ իմն բարրանօք ամօթոյ, կամ զարդարն ասել կեղծաւորութեամբ՝ ամբարտաւանութեանն վարագուրաւ. այլ և մնապարծական փառախնդրութեամբ առ 'ի մարդկանէ չերեւել գարշելի զթարախ այտուցեալ վէրացն յայտնապէս առ մարդիկ առանց ամօթոյ ցուցանելով:

Ոչ սուգ զգեցայ զի մխիթարեցայց. ոչ աղքատութիւն՝ մխիթարութիւն հոգւոյ, ոչ սրբութիւն սրտի, ոչ հեզութիւն առ եղբարս իմ կամ թշնամանիչս, ոչ հալածանս յանձն առի յաղագս արդարութեան՝ որոց է արքայութիւնն երկնից. ոչ նախատանս և չարաբանութիւն վասն սիրոյն տեառն. ոչ ատելութիւն յաղագս այնորիկ որ ատեցաւն վասն իմ յատելեացն բարոյ. ոչ քաղցեայ և ոչ ծարաւեցայ արդարութեամբ՝ գտանել յադուրդ 'ի տեառնէ. ոչ

ետու փոխ աղքատին . ոչ ողորմեցայ զի գտայց փոխարէն . ոչ զթշնամին քարշեալ և ծարաւի՝ կերակրեցի : Ոչ բրդեցի կարօտելոյն ըղհացն իմ, կամ զմերկն զգեցուցի , զանտունսն ոչ մուծի ընդ յարկաւ գերանաց իմոց . 'ի վերայ նեղչաց և ըկողաց աղօթս ոչ մատուցի , և ոչ ապտակողին մատուցի զապրեալ ծնօտն : Ցանցականին և պարտականին ոչ Թողի 'ի սրտէ , զի գտայց Թողութիւն . ոչ խոնարհեցայ զի բարձրացայց . ոչ զփառս արհամարհեցի մարդկայինս , վասն 'ի միոյն խընդրելոյ փառաց : Ընդ վարողին ոչ գնացի և ոչ զմողոնն . ոչ դատախարակեցի զգայարանս և ոչ զմի , և ոչ զմիտս ինքն կամ զշունչս . Նովաւ ոչ եղէ վշտակից որոց 'ի վիշտս , կամ ընդ խնդացելոյն խնդացի . ոչ հատուցի վարձս վարձականի , ոչ ժուժկալեցի լուտալոյ և այպանութեան ուրուք . ոչ անվեհեր երբէք եղէ 'ի գործ արժանաւոր փուԹոյ . և միանգամայն ասել 'ի հրամանաց Աստուծոյ՝ ոչ գիտեմ եԹէ վճա-

րեցի ըստ արժանի. և 'ի հրաժարելեացն ոչ 'ի բաց դարձայ ախորժակզք մնաց. վասն զի 'ի չարեաց ոչ կամեցայ ողջանալ և բարութեամբ լինել կատարեալ:

Եւ արդ գուցէ արդեւք ինձ յոյս Թողութեան, կամ գԹասցի՞ յիս ակն տեառըն ամենայնի, կամ Թէ արասցէ մեռուցումն այնքանոյ կամաւորի անօրէնութեան գործոյ. կամ լինիցի՞ տեղի աղաղակի իմոյ առաջի մարդասիրին յորժամ շնորհիցի ինձ առ նա դառնալ. եԹէ ո՞չ զայրասցի 'ի վերայ այնր՝ զի յետ բազում անգամ գտանել առ 'ի նմանէ ողորմուԹիւն և քաւուԹիւն, ոչ խորշեցայ 'ի չարեաց: Զարհուրեալ եմ և երկնչիմ զմտաւ ածելով զմեղացն բազմուԹիւն և զծանրուԹիւն. գիտեմ զի մեծ է ողորմուԹեամբ, այլ անհնազանդուԹեան իմոյ յանդգնուԹիւն զանզխտեցուցանէ զհոգւոյս դիտակցուԹիւն: Հաւատամ զի չիք սահման և չափ գԹուԹեան նորա անճառելւոյ. բայց վասն զի ոչ

դոյզն մի տապաշխարեցի, մղձկիմ յերկեւղէ անապաշաւութեանն ։ Աւաղ կարդամ անձին իմոյ հանապազ, սակայն ոչ դադարիմ խորհել և գործել զաւաղականսն, զեղկութեան արժանաւորսն․ զզջանամ մտօք խուն մի որքան և ոչ վարկանելի, այլ զերկայնութիւն աւուրցն ժամանակաց ծախեցի և ծախեմ յունայնութեան և չարութեան վաստակս․ Նախատեմ զանձն յաղագս աղտեղութեան և տղեղութեան, և դառնամ շաղախեմ զնա տղմով մեղաց․ առաւել քան որչափն էր՝ զմտաւ ածեմ թէ անհուն են խորք բարերարութեանն Աստուծոյ․ և զի ոչ արտասուեցի առաջի նորա մասնաւորիլ և ինձ, կասկածեմ յայնմ աւուր դարձուցանել զերեսս․ գոչեմ յայտնապէս եթէ այսպէս սիրեաց Աստուած զաշխարհս մինչեւ տալ զՈրդին իւր միածին ։ Բայց վասն զի անարժան երախտեացն վարեցայ կենօք․ յիշեմ զչարչարանս բանին Աստուծոյ մարմնացելոյ յաղագս մարդկան

օդոյ . բայց զի վերջացեալ ամենե-
ւին դատայ 'ի խաչակցին լինելոյ հրա-
մանաց՝ որք ընդ շաւիղս նորա ա-
խորժեն գնալ, անյոյս 'ի փրկու-
թենէ լինիմ գեհենոյն ։ Սակայն
ապաստան եղեալ յանպատմելի նո-
րա գթութիւնն , թէպէտ և մեղան-
չել համապազ ոչ դադարեմ, և ոչ
զողորմութիւնն խնդրել լուեցից .
խոստովան լինել նմա զյանցանացն
բազմութիւն , որ տայ ամենայնի ա-
ռատապէս և ոչ նախատէ . որում
պատիւ և փառք յաւիտեանս . ամէն ։



# ԻԲ.

## Բանք մաղթանաց

### ԱՌ ՍՈՒՐԲ ԿՈՅՍՆ ՄԱՐԻԱՄ

## ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

ԾՆՈՒՆԴ երկրածնին, և ծնող զամենեսեան ծնողի. կուսութեամբ մայր, և մայր գոլով՝ կոյս ըստ ճըշմարտութեան. երկոքումբք մի այսոքիւք և եղեալ և անուանեալ. գործոյ հրաշափառագունի սկիզբն և կատարած, ըստ որում է իւրն անշուշտ վկայութիւն: Բնութեանս պտուղ սքանչելի, և արմատ նորընծայ, և յոքնազան առաքինութեամբ՝ մի և միայնակ 'ի բազմութեան. յոլով բնութեամբ առանձնացեալ, և 'ի բազմութեան մի տեսեալ, և իմացեալ հասարակ և որիշ. զատուցեալ և ոչ մեկուսեալ. մին

աստուածային նորագործութեամբ, և միւսն հաղորդութեամբ ընտանեգունի բնութեան. շաղկապ՝ որոց անբաւ է մեկուսութիւն. անխառնելի բնութեանց խառնումն. անբաւելոյն բովանդակութիւն, և պարագրութիւն անպարագրականի էութեան. սկիզբն անսկզբանն, և անժամանակէին սահման ժամանակական. բերողին զամենայն բերող 'ի քեզ՝ նորին բաւականագործութեամբ: Հայեաց քա՛ղցր 'ի բնութիւնս՝ յորմէ ընտրեցար միայն լինել գերագոյն քան զբովանդակ զարարածս, և զչառաւելեալս անդուստ՝ ոչ ումեք 'ի միջնոց զուգագասական ունելով պատիւ և փառս մեծութեանն. և քան զորս զկնի՝ թէ և դէպ լինիցի երեւել սքանչելի, որ չափաւորապէս եւս անդր բնաւից նմին հաղորդեցելոց բնութեան: Գթա որպէս մայր մեծին ողորմութեամբ, որ զհօրն ունի խնամասիրութիւն և բարեգթութիւն. նմանեա խոնարհութեան նորա յաղագս տարագրելոց 'ի բա-

րութենէ ազգի մարդկան ժողովը_
դոց. մի անտես առնէր զաղաչողս
որբոյ և մշանջենաւորի կուսու_
թեան քո, որպէս մօր Աստուծոյ 'ի
ձեռն բարեխօսութեան, և ընդու_
նելի քոց պաղատանաց առ նոյն
ինքն Երրորդութիւնն սուրբ: Կան_
գնեսցես զգլորումն մեր, ուղիղ ա_
րասցես զշաւիղս ոտից մերոց 'ի ճա_
նապարհ արքունի. զմոլորութիւն
մեր դարձուսցես գեղեցիկ և քաղցր
դաւաղանաւ հովուութեան Որդւոյ
քո միածնի. գազանք ապականիչք
հեռասցին 'ի հօտէ նորա. մի կը_
ռուեսցին վէրք և որոմունք չա_
րութեան 'ի խաշինս արօտի նորա.
իսկ ըմբռնմունք որսորդին և պա_
րաւանդք որսացելոցն 'ի նմանէ
քակտեսցին արագ արագ. միջնոր_
դութեամբ աղօթից քոց գազանա_
բեկն բժշկեսցի. փութանակի յա_
ղագս քո դարձցի կորուսեալն. ախ_
տաժետն բազմատեսակ հիւանդու_
թեամբ և վիրօք՝ ապաքինեսցի.
խաւար ոգւոց մերոց փախիցէ. աչք
մեր տեսցեն համարձակապէս զա_

մենալոյս ճառագայթս զառ 'ի քէն մարմնացելոյ Բանին ։ Խրատ ուղղմութեան նորա զխլութիւն ականջաց մերոց իմանալեաց բժշկեսցէ · և յայտնի զգայարանաց մերոց անպահպանութիւն՝ ընդ որ մտանէ մահ հանապազ յոգիս մեր , և յերկիր մարմնոյ մերոյ՝ փակեալ կընքեսցի ։ Աղաչեսցես նահանջել արուեստիւ զօրութեան իւրոյ զանկարգ ընթացից մերոց յանդգնութիւն · զի մի արտաքոյ բարեբախտիկ ասպարիսին խայտալով ըստ օրինի ամեհեաց և խստերախից վըզանուտ այնոցիկ կենդանեաց լինիցիմք պախավէժք · յորս առաւել քան զամենեսեան զանձին իմոյ անկրթութիւն ըստ կամակորութեան տեսանեմ բերեալ անպատեհապէս · սակայն 'ի քո յուսալով մարդասիրական և անդառնալի ազօթդ առ Միածինն քո , եթէ միայն կամեսցիս , փրկութեան հանդիպել ոչ երկբայանամ ։ Գթասցիս 'ի վշտագին անձին իմոյ տարակուսանս · մի դարձուցաներ զերեսս քո յերկըր-

պագութենէ իմմէ առաջի քո. և մի վասն գարշագործութեան իմոյ զայրացեալ արձակեսցես ունայնաձեռն զիս:

Ի լաւ մատուցեալ եմ առաջի քո սրբութեդ. ողբոց իմոց և հառաչանաց բան՝ լսելի եղիցին յամենամաքուր ականջս քո. ընծայեսցես քեւ յանձնէ քումմէ որդւոյ քում, և տացես ինձ պարգեւս թողութեան. քանզի և նա իսկ բնաւին ոչ կամի զմա՛հ մեղաւորին, որպէս զդառնալն և զկեալ. և քեզ տուեալ է իշխանութիւն կեցուցանել միջնորդութեամբ աղօթից զդարձեալս՝ որպէս ծնողի զԱստուած: Յիշեա զպատճառ խոնարհութեան Նորա, յիշեա վասն որոյ եղեր և կոչեցար մայր անեղանելի բնութեանն. զոր լուարն իսկ յաւետարանչէ անտի քումմէ 'ի սպասաւորէ Աստուծոյ սրբոյ Գաբրիէլէ. 'Նա փրկեսցէ ըզժողովուրդ իւր 'ի մեղաց իւրոց. եթէ Նա՝ զի փրկեալք լիցուք մարդիկ ընդ մեղօք գրաւեալք և դատապարտեալք՝ հաճեցաւ լինել մարդ առ 'ի

քէն , հազորդ փրկութեան այնպիսւոյ ամենատուրքդ՝ մի թէ ոչ եղիցես լինել, եթէ ոչ վասն մեր , սակայն վասն նորա ։ Եւ եթէ այս մաղթանք դուզնաքեայք և տարաժամանք ոչ հաւանեցուսցեն զքեզ գթածդ , խոնարհումն նորա հաւանեցուսցէ . աղքատութիւն մեծատանն որ վասն մեր , ամենամեծին փոքրկութիւն . նուաստութիւնն գերագոյին . լիոյն և ամենակատարին ըստ բնութեանն թափումն . և գլուխ ամենայնի՝ անչարչարելոյն չարչարանք , և մահ անմահին ըստ էութեան ։ Ոչ փոքր ինչ է այս պատճառ իրաց առ 'ի հաւանեցուցանել զհեզութի քաղցրութեան քո . պատկառելի է քան զամենայն դիմաց պատուականութիւն , և իմանալի եւս բնութեանն վերնոյ հրեշտակականի յոյժ ակնածելի ։ Ոչ զանծանօթէ քեզ խորհրդոյ կամ զերաւորութենէ ինչ անգիտելոյ յանդգնաբար կամիմք լինել տեղեկացուցիչք . այլ զորոց սիրեան 'ի վեր քան զբան , և որ քեզն է նախածանօթագոյն քան

զամենայն ումեք 'ի նոա հաւատացելոց , ժտելով երկրորդիչք լինել համարձակիմք . որպէս զի հարկաւորեալ 'ի մեծութենէ անտի՝ որ սկսաւն 'ի քէն՝ սքանչելոյ և անհասականի , խոնարհեսցիս առ նովաւ առնուլ յանձն զաղաչանաց մերոց խնդրուածս ։

Նեղութիւնք և վիշտք և տառապանք գտին զիս , ոչ տան պատահել ինձ հանգստեան երբէք . պատեցան զինեւ երկունք մահու , քանզի որսալ զիս մարդասպանն 'ի սկզբանէ ոչ դադարէ . կազմեաց ոտից իմոց որոգայթս մահաբերս , և ըմբռնեաց զիս թակարդօք անօրէնութեանն . հեղձոյց 'ի գբի մեղաց զկեանս իմ. ած խաւար 'ի վերայ երեսաց իմոց . զխորամանկութեան իւրոյ նետս մուխս տեղեաց յիս զօր ամենայն . զերիկամունս անձին իմոյ և սիրտ պատճառ բարուոք կելոյ՝ խոցոտեաց յանխնայ . կոխեաց զիս որպէս ըզկաւ գուեհաց . զարիւն կենդանութեան իմոյ քամեաց գործակցութեամբ իմով . 'ի տղմի անօրէնու-

թեան թաթաւել զիս հանապազ և կոխել առ ոտս ոչ յագեցաւ. թաղեցայ ընկղմեցայ՝ և ոչ եւս երեւիմ. եղեւ բաժին իմ խաւար, և ժառանգութիւն իմ կորուստ յաւիտենական. տարացայ ստուգապէս 'ի յուսոյ փրկութեան. էանց ժամանակ փրկութեան և ոչ գիտացի. հնարից կելուրք վախճանեցաւ. ոչ է զօրութիւն յիս, և ոչ իմաստութիւն խորհել և գործել՝ որով տուեալ լինի կեանք. ամենայն ուստեք առաւելեան ինձ տարակուսանք. սպառեցաւ՝ ակնկալութիւն յուսոյ փրկութեան իմոյ. այլ և ամօթ երեսաց իմոց ծածկեաց զիս յաղագս գործոց՝ արժանեաց ամօթոյ և պատկառանաց. վարկանիմ փակեալ ինձ զդրունս մարդասիրութեանն Աստուծոյ. եթէ մտից բախելով, կարծեմ ալխեալ և ալընդեալ 'ի վերայ իմ միայն զայնպիսոյ ընդարձակութեան մուտ. յանձն իմ տարակուսիմ վարանեալ, և եւս ինչ անհնարին այսր վտանգաւորութեան ոչ կարեմ իմանալ կամ

գտանել. քանզի թէ ես ինձէն եղէ մատնիչ անձին, ո՞ ինձ ողորմեսցի. և եթէ մատնեցի ախորժելով զիս ինքն 'ի կորուստ, ո՞ գթասցի խնդրել և գտանել զիս. այլ գիտեմ զի դիւրին և հնարաւոր քեզ այսպիսի անլուծանելոյ կապանաց լուծումն:

Մայր Աստուծոյ Մարիամ կոյս սուրբ, փրկութիւնասէր ամենեցուն, ազատարար, հաշտեցուցիչ Աստուծոյ, քաղցր առ ամենայն մեղաւորս, գտիչ անձանց կորուսելոց, քաջայօժար 'ի մաղթանս վասն կենաց՝ մեռելոց Աստուծոյ, կարկառ զամենասուրբ ձեռն քո. ձգեա զիս 'ի փրկութենաստուածընկալ խնդրուածովք սրբութեն քո. 'ի խոշտանկեալ վտանգէ աստի և 'ի տարակուսանաց զերծո զիս. քաղցրացո զաղաչանս յականջս միածնի Որդւոյ քո վասն թշուառական անձին իմոյ. հաշտեցո զբարերար և զմարդասէր Հայր նորա ընդ բարկացուցանողի զնա՝ կորստականի անձին իմոյ. զողորմած և քաղցր զամենասուրբ Հոգի նորա

ցածո 'ի ցասմանէ դառնացուցանողի զնա վարուց իմոց դժնդակութեամբ և դառնութեամբ. զտոռունս մեղաց իմոց խզեա խնդրուածովք առաջի աստուածութեան սրբոյ Երրորդութեանն, անցուցանել յինէն զդատաստան մահու յաւիտենականի, զոր եդու ես ինքնին ձեռնագրել 'ի վերայ իմ։ Աղաչեմ սրբուհիդ, լեր ինձ պատճառ փրրկութեան և ազատութեան. տուր ինձ կեանս յԱստուծոյ, զի մի մեռայց, և ննջեցից զմշտնջենաւորն մահ և ննջումն. այլ ընդ կենդանեաց յաւիտենից՝ Աստուծոյ կենդանւոյ և ճշմարտի ողորմութեամբ անոխակալութեան նորա և գթութեան արժանի եղէց տալ նմա օրհնութիւն և պատիւ զոր ունին. այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից. ամէն։



# ՑԱՆԿ

ԺԷ. ՀԱՏՈՐՈՅ

Սարկաւագայ վարդապետի Աղօթք